# ԸՆՏԻՐ

# ՄԱՏԵՆԱԳԻՐՔ

---

## ԳՐԻԳՈՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՏՂԱՅ
## ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

# ԳՐԻԳՈՐԻ

## Կ Ա Թ Ո Ղ Ի Կ Ո Ս Ի

## ՏՂԱՅ ԿՈՉԵՑԵԼՈՅ

## ՆԱՄԱԿԱՆԻ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1865

# ՏԵԱՌՆ
# ԳՐԻԳՈՐԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ
# ՆԱՄԱԿԱՆԻ

---

## ՊԱՏԱՍԽԱՆԻ

*Թղթոյն վարդապետին Գրիգորի Տուտէորդւոյն կոչեցելոյ ՚ի մայրաքաղաքն Հաղբատայ. գրեալ ՚ի Տէր Գրիգոր կաթողիկոսէ Հայոց, յեղբօրորդւոյ սրբոց կաթողիկոսացն Գրիգորիսի և Ներսէսի, որ մականուանեցաւ Տղայ անուանի։*

ԱՐԳՈՅ *և պատուական յամենայն մատուցեալ բարեաց, որ ըստ աստուածային նախախնամողն մատակարարութեան բաշխեցաւ՝ ի բոլոր սեռ իմանալի և զգալի էութեանց,*

առաջին և Նախամեծարն յընտրե-
լեացն՝ վերագոյն և գերաշխարհիկ,
և պայծառագունացն գլխաւոր տե-
սանի խորատ: Սա որ անկելոցն ընդ-
նիքեամբ ախորժակաց մակացու, և
բարձրայօնակ գահերիցութեամբ
ընդ անհամեմատն աստիճանեալ
դասու, և զօրութեամբ յառաջ
խաղալով պաշտի յառանձնական-
սըն: Զկնի և 'ի նիւթեղէնսն, ուս-
տի առին զարգանալ բազմատեղն
հանճարոյն տեսակք· 'ի բանական և
'ի գործնական արհեստս զընդհա-
նուրս շարժելով, ոչ միայն զկելոյն
պաճարանս, այլ և առ գիտու-
թիւնս էիցն, և անհուն հմտու-
թեանց հասու գոլ բաւականա-
ցեալք իբրև պատշէն իմն և ճաճանչ
անեղին զօրութեանն կաթեցեալ
յարարածս:

Ըստ առաջնոյն՝ յաստուածային
իմաստակացն ընկալեալ՝ 'ի տըբու-
չութենէ Հոգւոյն, որպէս յոր-
դորէ զղեռաբոյս մանկունսն ըն-
դունել 'ի ծերագունից հարցն
զայս աստուածային և գերա-

հրաշ պարգևս․ Լուր որդեակ, ա-
սէ, խրատու հօր քոյ, և մա ընկալ-
ցես պսակ շնորհաց 'ի գլուխ քո․
և ամբարշտութիւն մեծ ծանոյց
ղայն անգոսնողացն զխրատ։ Զնոյն
[illegible]
և նախամեծար մարգարէն՝ հայր
սորէն՝ խնդրէր, խրատել յարդա-
րոյն ողորմութեամբ, և մի բարկու-
թեամբ։ Եւ Պաւղոս յետ գաւ-
նազոյն աւրբմանն 'ի տհաս տխոց և
յանգխտութենէ, յետոյ պատուէ
խաղաղութեան պարգևել աւէ՝
որք նովաւ կրթեցան անձամբ 'ի
ճշմարտագունիցն ասեալ։ Յաղագս
որոյ ընաւորեալ եմ 'ի խրատուէ
ոչ խուսափել, և յանդիմանչէ ոչ
հրաժարել․ և հաստատեալ եմ
թէ առանց սոցա ոչ ինչ գոյ ինձ
լինել կարողութիւն հասանելոյ
արժանեացն․ մանաւանդ զթագա-
ւորականն և զարքունի, զի մի իբրև
զչամռքելոցն 'ի հնազանդութիւն՝
կրկցեմ պատիժս․ այլ արդաքոյ մա-
հու և կորստեան փտանիցիմ։ Վասն
զի ուսայ կրկին ստանալ ծնօղս,
զմինն կենցս, և զմիւսն բարուցս կե-

լոյ. և ծանիցուք զառանձնականն յատկութիւն խրատուց յիմաստանոց ոմանց արտայայտեալ և ծանուցեալ, ասէ. Խրատ է բան բացատութեամբ գլխաւորեալ, յորդորելով յինչ, և կամ հրաժարեցուցանելով: Եւ խրատուս ոմն է բացատական, որպէս՝ Գէտք են ընչից. և ոմն հրաժարական, որպէս՝ Ոչ է պարտ զամենայն գիշերն քունել. և ոմն յորդորական, որպէս՝ Պարտ է յազգատութենէ փախչել. և ոմն պարզ, Մի հաւ քաղ. և ոմն շարադրեալ, Ոչ է բարւոք բազմիշխանութիւն, մի իշխան եղիցի. և ոմն առաւելահրաշ, Ոչ ինչ տկարագոյն երկիր սնուցանէ քան զմարդ: Արդ զանազանութիւն խրատուց զայս իսկ ծանիցուք, և զշահ օգտութեանն որ 'ի սոցանէ՝ ոչ անգիտասցուք. բայց նմին և զանգոսնողացն պատիժս:

Իսկ զաւ 'ի ձէնջ այժմու գըրեալքս ոչ այսպէս իմացայք բան խրատական իբրև 'ի ծերագոյն հօրէ, և 'ի Ճշմարիտ սիրողէ հեզ

դէտ աթոռոյս և աթոռակալէս , և որք զգուշաւ իցեն պարահայ-եացք ոմանք, անգիտացեալ զանձինս և որ 'ի քեզ իցեն հոգեւոր պար-գևք : Ու գտանիս պատժապարտ ընդ անարգողացն զծնօղս իւրեանց. որ թէ 'ի կամակար մտաց , և 'ի Ճշմարիտ գիտութենէ ածար յայս , հայեաց յանձն քո , 'ի քեզ ինքն հայեաց . զքեզ ծանիր . ուսիր ոչ գոյ այլ ինչ մեծութիւն քան զծա-նօթութիւն անձին , որպէս ուսանք յիմաստնոց : Իսկ եթէ յոչգիտու-թենէ անձին, և 'ի զբաղեալ մտաց, Հաւանիմ և ես . զի որոյ աչք և տեսութիւն 'ի գլխոյն իցէ, և առ գլուխն , ընդ խաւար ոչ գնայ՝ գայ-թակղելով և բախելով 'ի կոշտից Ճանապարհին . և առ այս դարձեալ պարտիս նայել 'ի քեզ ինքն : Իսկ եթէ այսոքիկ ոչ իցեն պատճառք եղելոց իրաց , ապա յայտնի տա-րացոյց տայք, եթէ հեռի էք յամե-նայն գիտութէ հին և նոր կտակա-րանաց . մանաւանդ թէ և աստուա-ծային սուրբ հաւատոյս կանո-

նականն սահմանքն ոչ գտանիցին՝ ի միջի
ձեր. և ոչ ներգործեն սահմանեալ
դեղօքն իբրև զճարտարս 'ի բժըշ-
կաց՝ զոմանս խարելով, և զոմանս
կտրելով, և զայլս ոմանս կակղա-
գոյն սպեղանեօք բժշկելով. զոր ե-
թէ լուեալ էիր աստուածաւանդ
տաւիղն, եթէ Զիշխան ժողովըր-
դեան քո մի՛ հայհոյեսցես, ապա
թէ յանդգնիս՝ մահու վախճանեա-
ցիս, կարծեմ թէ ոչ հրամայէիր
մեզ անկանել, ուստի Տէր ետ զմե-
րանսատելն. և այն առաջի ռամկաց,
և անքնին մտօք, և առանց կանո-
նական հրամանաց և դատաւճռի.
կամ յափշտակելով քեզ ինքեան
զայս վիճակ տիրաբար, և կամ մնալ
առանց գլխոյ և առաջնորդի, և ե-
րևել վատթարագոյն քան զքաղս,
և զխորդս, և զաքաղաղս, առանց
գիտի և ձայնատուի ննջել և արա-
ծել. մնալով զօր առանց զօրավա-
րի, և քաղաք առանց քաղաքա-
պետի և օրէնսդրի. զոր և ոչ յար-
տաքնոցն ոք պատշաճ վարկաւ՝
զայս իր յանդգնութեան համա-

Ճշմարտապատմունեց ումանց, որով և վկայեցեր մեղանաւ 'ի գրութենէ ձեռին քո, այժմ ընդէր հրամայես մեզ անկանել և լալ: Ապա թէ այլապէս խորհիս առ կարծիս մտացդ, և առ փոփոխ բնաւորականիդ, ոչ լինել մեզ ըստ նմանութեան առաջնոցն, յորոց ընկալաքն և ուսաք. կամ թէ փոխեցաք ինչ անտես առնելով զոր 'ի նոցանէն և յայլոց իսկ սրբոցն ընկալաք, լուաք և առաք նորաձև ինչ առնելով անձնահաճ կամօք, այդ մի ինչ անկցի 'ի սիրտ քո:

Ծանիր կարծեցեալ սիրելի, զի յառաջ ընդհանուր բարեփառութեան պարունակող Ճանաչիւր սուրբ և երկնահանգէտ աթոռս. և այժմ առաւել ևս հրաշափառ աստուածային և մարդկային. անըստգտանելի արգասաւորութեամբն յօրացեալ յերկակայս կենցաղոյս խնդամիտ փափկութեամբ: Զայս ոչ կամաւ յափշտակեալ ցաւալից մտաց ծնունդ. մի կարծեսցի անուղղայ երևել ինչ իբր թէ երկուց

ընդակցութիւն սուղանեաց կարո-
տելի գոլ: Այլ թէ տացի կանգնել
գերապարծս իշխանութիւն 'ի մե-
րայ քո աստուածայնովքն, ապա
ունիս տեսանել բառացի չքնաղե-
րութեամբ հարստացեալս զմեզ առ
քոյդ աղքատ մտածութիւն. որովք
մեցի քեզ աղաւաղել իբրև զաւա-
ղաբեր սուրհանդակ հակակայիւք
բարբառոյն ընկճեալ՝ անձեռնհաս կան-
գնել զլքումն քո, միայն անօգուտ
զզջմամբ 'ի չափանցելի աղաչանա-
նացն գնեցիս մասին. և զատանեցիս
պարտեալ առ թշնամանասեր կամս
քո ներհակացն հանդիպմամբ:
Վասն զի զտանես զսա ուրեմն բու-
ժօղ առաջնորդ ունել զայսր աս-
տուածային քաղաքի չքնաղութիւն
յարադրուարձ բերկրանօք. և եթէ
դու ըստ առաջին հաւանականացն
կամիս զտանել պատճառ անկման
և գլորման, ասա պատակ պայծառու-
թեան և յաղթութեան պարծանք:
Եւ եթէ այդր խորոխտումն մա-
հաթոյն և ամօթալի դասալքու-
թիւն կարծես, ասա յոյս խնդա-

յայս երկնահանգէտ աթոռոյ դի-
տաւորութիւն, և յորոց քաղա-
քավարի, զատանիցես զսա անփորձ
'ի բանից, և 'ի չարագոյն յուզմանց՝
պարփակեալ ողջոյն անեղին ան-
դրդուելի ամրութեամբ. և ան-
ոստգամանելի ընդդէմ նախանձոտ
կամաց, գիտելի Տեառն յառաջ
քան զլինելն յարգանդ սրբեալ, և
նախ քան զծնանելն մարգարէ,
չ 'անարգ, այլ ընդունելի և յիւ-
րում տան, և 'ի բոլոր սեռս. որ
և 'ի բացայայտեալ բարեփառու-
թեանս պատուոյ, փախստական
եղեն ծանրատաղտուկ հնազան-
դութեանն լծկանք. և ազատու-
թեանն բերկրանք զհասարակացն
հաստատեցին ուրախութիւն՝ յաւե-
ուածով և յագմամբ ըղձակերտե-
անել 'ի յապառնիսն անըստգտա-
ելի հրճուանացն խնդութեամբ
անգայթ և յարազուարճ յառա-
ելով զկենցաղին հոլովս. որով ե-
ւելապէս խոստովանեալ ճանա-
ի բարեհամբաւ փառաւզան ըստ
սաստաւորութեան հնագունացն,

րակքն ոչ լինել զբազմաժողով խռն-
ջոյլն փափագ: Գուպարայաղթ
նահատակք ընդ նիզակաձօձ խրոխ-
խուսանացն զօրաւորագոյն բար-
գաւաճանացն՝ ոչ ժառանգեն մեծ
ապարանս: Այս յայտ իսկ է եթէ
'ի զուր վաստակեցաւ Պաւղոս, և
'ի զուր և ունայն նաւակոծեցաւ,
և անվաստակ եղև 'ի յարբամանէ
հնգից քառասնիցն՝ 'ի հարկանո-
ղացն ընկալեալ. մնոտի էր յոյս
նորա 'ի ձաղանս կատականացն և
'ի քարկոծմանն: Ի զուր աշխա-
տեցաւ և Պետրոս, և ոչ ուղղեցան
ոտք նորա 'ի գնացս՝ ընդ որ խորհե-
ցաւ և արար: Ընդունայն են քա-
րոզութիւնք նոցա. ընդունայն ա-
պա և խաչն, և որ 'ի վերայ նորա,
զի ոչ եղև խաղաղութիւն վարդա-
պետաց, այլ խռովութիւն և աղ-
մուկ: Եւ սուտ էին խոստմունք
նորա առ Պետրոս, թէ և 'ի վերայ
այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ,
և դրունք դժոխոց զնա մի՛ յաղ-
թահարեսցեն: Արդ յաղթահա-
րեցաւ և կորեաւ. զի ոչ է եկեղե-

ջի, այլ այր աւազակաց. ոչ է մկրտութիւն 'ի Թողութիւն մեղաց, այլ միայն 'ի լուացումն ջրոյ: Արդ ուրախ լեր Պիղատոս, ցնծացէք և դուք դասք քահանայապետաց՝ Աննա և Կայիափա, վասն զի ոչ սպանիք տէր, այլ մոլորեցուցիչ. ոչ խաչեցիք Աստուած, այլ գող և աւազակ և խռովարար. ոչ հովիւ քաջ, այլ վարատօղ ոչխարաց: Սուտ է որդին որոտման, և եղբայր է որդին Տուտեայ: Եթէ այն այր աւազակաց, աւազակապետ Քրիստոս. եթէ այն մոլորութեան տեղ, մոլորեցուցիչ Քրիստոս. եթէ այն տեղի կորստեան՝ կորուսիչ Քրիստոս. զինա հանապազ քարոզի անդանօր. և նորայն ծաղկէ ծննդականութիւն, և հաւատ և յիշատակ անուան նորա. կատարի յարաժամ անարիւն զենումն 'ի Թողութիւն մեղաց հաւատով մերձեցելոցն և ընդունողացն: Եւ եթէ ոք լրբենի դիմօք և մոլեգնեալ ախտիւ յանդգնի կոչել զնա այր աւազակաց, 'ի յաստուածախօս

տուեալն յանդիմանութեան հրաշա-
բեմք զայնոսիկն, և ՚ի բաց վարեսցէ
իբրև զԹշնամին Աստուծոյ և եկե-
ղեցւոյ նորա. և փոխանակ այնո-
րիկ անուանեմք զնա լեառն սուրբ,
և քաղաքն Աստուծոյ կենդանւոյ հա-
ւատար մերոյն Երուսաղէմի. հարս
նորան անմահ փեսայիւն Քրիստո-
սի, չնմեալ խնամատութեամբն Հօր և
ճշմարիտ պատկերին Յիսուսի. մայր
ծննդական որդւոց արքայութեան
կերակրիչ և դարմանիչ առատա-
գոյն կերակրովք արժանաւորաց և
անարժանից, որպէս և բնութեամբ
քաղցր՝ շնորհաց և պատուաշնորհաց.
և զարեգակն ցօղախառն հեղու ՚ի
վերայ արդարոց և մեղաւորաց՝
լուսաւորելով և զովացուցանելով
՚ի տապախառն մէգէ չարին:

Այլ զի գրեցէք, թէ անիծեալ
տումարն երկարանակին Լևոնի. հար-
ցանեմ աստանօր թէ զինչ է տու-
մարդ, և զինչ է երկարանակդ ա-
նուն. հայերէն, թէ յունարէն, և
թէ պարսկական գենիւ և ուսմանաւ,
ըստ գաւառիդ բերման: Լևոն մեր

նէծս։ Թուի թէ այս 'ի փաղնջաց հեռէ, որպէս պատմէ նոյն ինքն Անանիա յաղագս անբարեսէր ազգիս՝ տրտնջմամբ, առ որս ոչ պատուի գիտութիւն, այլ անձնահաճ կամք։

Այլ զի ընդ բազում բանս ձեր կարկատուն և սատայօգս անցի, և նայեցայ ուշիմ մտօք, և ոչ տեսի 'ի նոսա ծաղկելի և անուշահամ պտուղ, ոչ արգիւնաւորեցաւ առ մեզ. քանզի յեռանդնոտ և 'ի փայլակնացեալ սրտէ յառաջ բերի վիճաբանութիւն և կռիւ, որպէս և վկայէ Ճշմարիտ բանն տեառն, եթէ Ցաւելուածոյ սրտի խօսի բերանն։ Եւ այն՝ եթէ ոչ գոյ հրաման գլխոյն և առաջնորդին ժողով առնել եպիսկոպոսաց և վարդապետաց, և պարապել աստուածայնոց բանից քննութեանց, շահել և շահեցուցանել զնոսա, և ոչ սահմանէն զայն կանոնագիր հրամանքն, այլ 'ի հեռաստանէ հաւատալ ըստ առ որ Թումայի բանին. վա՛չ ծերունի ծնողիդ, ոչ իմ, այլ որ հարազա

տուԹեամբ բերէ զնմանութիւն հօրդ ։

Դարձեալ այլ ինչ անպիտան դատք շարադրեալ ՚ի բանս ձեր, սեփհականելով զձեզ ինքն Ճշմարիտ տնտես տանն Աստուծոյ. և հաւաստարեցիք զնոսա այլոց ոմանց խոտելոց, որ կոչեցաւ գայլ. վասն զի գայլաբար օձտեաց զհօտն Քրիստոսի, և այսու նմանեցաւ Պետրոսի վիմին հաւատոյ. վասն զի և նա գայլ գոլով օձտօղ հօտին Քրիստոսի, յաւելիք զնա և կրկին քաղաքաց քաղաքացի անտիոքացի աղէքսանդրացի. և զԴէոսկորոս հաւասար Քրիստոսի փրկիչ ժողովըրդեանս Հայոց արեամբ և խաչիւ. և առ այս՝ վա՜յ, և առաւել վա՜յ ։ Թուի ինձ սատանոր եԹէ վերահասու իցես ամենայն ժամանակագրաց և պատմութեանց ։

Իսկ ես ոչ եմ փրկեալ արեամբ Դէոսկորոսի, այլ միոյն Քրիստոսի. և ոչ եմ օձտեալ ՚ի գայլէն Պետրոսէ, այլ ՚ի Ճշմարիտ հովուէն փրկեալ ՚ի գայլէն, և ժողովեալ ՚ի

Բանին և մարմնոյն. և թէ որպէս եկին առ միմեանս անշփոթելի բնութեամբ և կրիւք. և յետ բազում խոստմանց յանգ և յաւարտ հաներ միով բանիւ՝ արկանելով զանձինդ 'ի խորս կորստեան աղիտացն և անհաւատիցն, ուրանալով բովանդակ զմարդկայինս բնութիւն, և յոչէութիւն փոխելով: Որ թէ և կամիս ձեռնարկել՝ զքոյդ կարկատելով հերձուած և տկարաբանութիւն, անկարելի մնաս. առնելով տառանօր ստութեանդ. քո վկայ զմեծն Մովսէս: Սնոտի այլաբանութիւն՝ օտար եւրիչ յամենայն գիտնոց. կարծելով եթէ մեք եբրայեցերէն ոչ գիտեմք, և կամ թէ ոչ իմանամք եթէ զո՞ւմ արդեօք բանս 'ի բանաստեղծաց պատրուակես ընդ Մովսեսիւ: Եթէ մոլորեալ ես՝ առ յինէն ընկալ. վասն զի իմաստասէր ումն յունական՝ Արիստոտէլ անուն ստագիրացի ազգաւ 'ի Քաղքիդ գաւառէ, յորժամ էառ 'ի պատմել զբնութիւն արարածոցս տարրորէն փաղաքութեամբ

բաժանելով տեսան առողջութեանցն բայիւք, յաղագս գոյացութեան, յաղագս կենդանութեան, յաղագս քանակի, որակի և որակութեանց և այլն, յանձն, 'ի ձև, 'ի տեսակ, 'ի քանակ, և յորակ, յընթակայ, և 'ի ննթակայում, բայց ոչ զմարդկայինս ուրացաբնութիւն. այլ զաստուածայինն ջանաց փոխարկել յանձն՝ յաղագըս անօսրութեանն. և զի թափանցանց ումի ընդ ամենայն էքս. որպէս սոյն Արիստոտէլ, և Դիոնարքոս՝ անգոյ սասացին զանձն. զոր և ոմանք յեկեղեցականաց այժմ ջանան կարկատել՝ ոչ բնութեամբ միանալ բանին Աստուծոյ ընդ մարմին, այլ անձնաւորութեամբ. և վկայ զսոյն խսկ զԱրիստոտէլ ունելով, զի թերեւս այսու կարասցեն 'ի մի բնութեանն բան ածել զնա հարկաւորաբար. որպէս և դու այժմ ջանաս զմարմնոյն ուրանալ և կորուսանել բնութիւն, և նորա զաստուածութեանն. որովք կարծեմ թէ և երկոքեանց սպալէք 'ի

Ճշմարտութեանն պատգամաւորէ։ Սա
որ յանդիմանէ զգեղ երջանկին և
սուրբ վարդապետն Յովհաննէս ի-
մաստասէր և ուղղափառն՝ առանց փափա-
գելոյ 'ի բնութեանց անուանէ, ընդ-
նմին և յերկուցս ասելոյ, և ո՛չ զի-
ասես եթէ մարմին ասելով յեր-
կուսին 'ի նորայս բնութիւնս, յորոց
միաւորեցաք։ Արդ զնոյնս՝ որովք բա-
րեպաշտեալք կարծես, հակառակ
ընդդէմ քեզ եղեն։ Զմարմինն՝
մարմին Բանին ասելով, և զԲանն
ասացեալ մարմին ունել, զի՞նչ
այլ ինչ թուեցիս ասել՝ եթէ ոչ
երկինս։ Եւ դարձեալ զԲանն 'ի հօ-
րէ ասելով զհօրն ասացես նմա ըզ-
բնութիւն. իսկ զմարմինն 'ի մարդ-
կանէ ասելով, զո՞ր ունել ասես նմա
բնութիւն, եթէ ոչ զմարդկան։
Բայց կարծեմ թէ կամիս և ոչ մար-
մին Քրիստոսի ասել, զի թէ զմար-
մինն Ճշմարտութեանս խոստովա-
նեիր ունել Քրիստոսի, և զայն 'ի
մարդկանէ և մարդկային, զնոյն և
բնութիւն մարդկային ոչ արգելեր
խղճէիր ասել։ Քանզի նոյն է մարդ-

կայքն մարմնոյն ունել Քրիստոսի, և բնութիւն մարդկային. և զի Քրիստոս առանց միաւորութեանն ոչ առ Քրիստոս Յիսուս, այլ Աստուած բան, որպէս և առաջին Բանակ լինի ասէ. Զի թէ ասիցէ ոք զմարմնոյն բնութիւն Բանին, և զԲանին բնութիւն մարմնոյն, անփոփոխութեամբ լինին այսպէս ասացեալքն: Իսկ եթէ զմի և զնոյն Քրիստոս յերկուց խառնակմանեցիս ասել բնութեանց, այսինքն աստուածայնոյ և մարդկայնոյ, ընդէ՞ր արդեօք զարհուրիս, և զայրանաս, և այլանդակս և հայհոյէս շարադրութեամբ զբարբարոսաշատաց պղտորես զանձնիս: Քանզի ասեմք 'ի Հօրէ ծնեալ անմարմին էր, նոյն անձնաւորեալ 'ի սուրբ կուսէն. և որ 'ի Հօրէ բնութիւնն էր, նոյն բնաւորեալ եղև յարգանդի կուսին. և սակայն գոհութիւն Աստուծոյ, որ յայտնէ զխորս խաւարի, և հանէ 'ի լոյս զստուեր մահու: Արդ զիա՞րդ անձնաւորեցաւ 'ի կուսին՝ անձն Բանին. Թողում զեր գոյութիւնն՝

յայլո՜ւմ գտաւ գոյութեան, որպէս Պանդորոյն ասէ, եթէ յիւրումն նմանելով զերևութականն միայն զձևն զինքեամբ արկաւ, առաջօք և ձևով և եթ ցուցեալ զմերն 'ի կուսէ․ որպէս Եւտիքէսն երկրորդ յիմարաբար բարբառի ասելով․ խոստովանիմ զբանն Աստուած յարգանդի կուսին կերպացեալ, տպաւորեալ 'ի պատկեր և 'ի ձև մարդոյ եղեալ․ այլ ոչ եթէ յարարածական բնութենէն ինչ յինքն խառնեաց․ քանզի անխառն է աստուածութիւնն և անյօդ։

Տեսանե՞ս, ո՛րպէս համաձայնք ամիմեանս գտանին յամբարշտելդ․ դու ասես, 'ի Հօրէ անձնն որդւոյ անձնաւորեցաւ 'ի կուսին․ և նա ասէ, ոչ ինչ խառնեաց 'ի կուսէն յանխառն աստուածութիւնն։ Եւ եթէ ոչ գոյութիւն ինչ անձնաւոր զմերս 'ի կուսէ ընդ ինքեան միաւորեաց բանն, զի՞նչ ինքն զինքն մարդ և որդի մարդոյ անուանեաց․ զի՞նչ և տղայ երևեալ խանձարրապատեցաւ, և կաթնաբոյծ եղանիւր․ և

առ կատարելութիւն 'ի վերընթա-
նայր առանձնամբ հասարակի՝ ըստ մեծին
Աթանասի ուղղափառ դաւանու-
թեան. Որքան ինքն, ասէ, հրամայ-
եաց՝ զբնութիւնն յինքն կատա-
րելով ընկալաւ. որքան կամեցաւ.
այս է ծննդեանն 'ի կնոջէ, առանձին
հասարակի, ամաց թուոյ, աշխատու-
թեան, ծարաւոյ, և քաղցոյ, և
քնոյ, և տրտմութեան, և մահու,
և յարութեան. Այսոքիկ ամենե-
քեան՝ նմանութիւնք և երևոյթք
թուեցին քեզ եղեալքն 'ի Քրիս-
տոսէ, թէ ճշմարտութիւն. Ապա
եթէ է ճշմարտութիւն, որպէս և
է իսկ, քանզի անհնար է անսուտն
Աստուծոյ ստութեամբ իւիք կեղ-
ծաւորել 'ի գործս իւր, զիա՞րդ իշ-
խես ասել զաներևոյթ և զանմար-
մին անձն որդւոյ մարմնաձևապէս
անձնանալ յարգանդի կուսին, եթէ
ոչ զկատարեալ մեր բնութիւնս 'ի
կնոջէ յինքն ընկալեալ, ընդ ին-
քեան միաւորեաց բանն Աստուած
առաքեալ 'ի Հօրէ.

Եթէ այդպէս առնեմք, ասեն, եր-

կուս լինիմք ասացեալ զՏէրն, և եր-կուս բնութիւնս: Դարձեալ փախ-չելով ՚ի սնոտի երկիւղէ՝ ՚ի մեծա-գոյնն անկանիս չար: Եթէ յեր-կուց ըստ բնութեան ոչ կամիս ա-սել զմինն, կարի յոյժ չարաչար ըստ բնութեան զմին գտանիս ասա-ցեալ բնութիւն: Այլ անմարմին բնութիւն աստուածայինն Բանին՝ զմարմնական բնութիւն ՚ի կուսէն ընկալեալ ընդ ինքեան միաւորեաց. որ է ըստ բնութեան յերկուց՝ աս-տուածայինն և մարդկայինն. իսկ ըստ միաւորութեան՝ մի: Զի եթէ այս երկուք գեղեցկագոյն հաւատոյ ոտիւք առ ճշմարտութիւնն ՚ի վեր կանգնեալ ոչ հաստատիս, առ որ և յենուցուս առ մինն ՚ի նոցանէ՝ կաղ գտանիս առ խոստովանու-թիւն ճշմարտութեան: Այլ կա-տարեալ՝ ըստ իւրաքանչիւրոցն դի-տելով զերկուսն, ըստ միաւորու-թեան՝ մի կատարեալ, մի Տէր, և մի որդի Աստուծոյ խոստովանելով, որպէս սուրբն Բասիլիոս ասէ. Եր-կուց գոյացութեանց կատարելոց միաւորութիւն:

Արդ յայտնապէս հրատարակեցար յաստուածայնոց բանիցս դիտաւորութեանց՝ արտաքոյ գոլ քեզ ճշմարտութեան ճանապարհին, յԵւտիքէին և 'ի Պանդորոսին անկեալ ախտ, հիւանդ և հերձուած չար։ Յաղագս որոյ խորհըրդակից լինիմ քեզ իբրև ճշմարիտ բարեկամ՝ զգուշանալ անձին, և խորատեալ աստուածաւանդ տառիցն սրբախօսութեամբ՝ սթափիլ յայդպիսի մոլորութեանց։ Եթէ զԱթանաս սուրբ քեզ սփոփականեցեր, ևս ընկալ 'ի ձեռս գիր նորա, և ուշիմ մտօք ընթերցիր 'ի սկզբանէ մինչև ցկատարումն. մանաւանդ զբանն՝ որ յաղագս Որդւոյ յայտնութեան և մարմնաւորութեանն գրեալ է այսպէս. Որք շահէր մեր Յիսուս Քրիստոս ոչ յԱստուծոյ և 'ի մարդոյ մի խառնմանեին, որպէս և գրեալ է յաւետարանին՝ յԱդամայ և յԱստուծոյ, ասասցեն, զիարդ որ 'ի կերպարանս Աստուծոյ է Աստուած՝ առեալ զկերպարանս ծառայի կարծեցին,

կամ զբանն՝ մարմին եղև և բնակեաց 'ի մեզ՝ իմացան. քանզի որ ասաց թէ Բանն մարմին եղև, ասաց թէ ինքն զանձն իւր եդ վասն մեր. արդեօք որպէս բանին փոփոխմամբն կրեալ 'ի մարմնոյ փոխադրութիւն կամ որպէս ցուցումն ինչ արարեալ մարդկայնոյս կերպի, որպէս այլք 'ի հերձուածողացն մոլորեալք ասեն:

Դարձեալ քանզի ամենեցուն յառաջագոյն ասացելոց հերձուածողացդ հաղորդք եղէք, անհաւատ եղեալք միաւորութեանն, և ընդդիմաբանեալք լրմանն, 'ի բաց բարձումն տարեալ եղէք զանջատման մտածութիւն պատճառելովն. քանզի որպէս անջատողքն մոլեգնեցան, և շփոթողքն մոլորեցան, այսպէս և 'ի բաց բարձողքն կորեան. Ճշմարիտ եղեալ անօրէնութիւնն, և ճշմարտութիւնն եբեկեալ, և շնորհին վկայեալ: Դարձեալ ըստ առաքելական հրամանին վկայութեան՝ այսպէս յաւելու. որպէս գոլ 'ի հեթանոսաց ժառանգակի-

յիս և մարմնաւորեցաւ Քրիստոսի, զի և մարդ իցէ՝ Աստուած ճշմարիտ, և Աստուած իցէ՝ մարդ ճշմարիտ. ոչ մարդոյ առ Աստուած գոլով, որպէս և դուք զրպարտեալ առէք, հեգնելով զքրիստոնէից զխորհուրդս: Աստուծոյ միածնի հաճեցեալ զլրումն աստուածութեան իւրոյ զսկզբնատիպն մարդոյ զստեղծուած և արարած նոր յարուցանել ինքեամբ, և անլոյծ միաւորութեամբն. զի յաղագս մարդկան իրականութիւն չարչարանօք և մահուամբ և յարութեամբ զփրկութիւն մարդկան գործեալ:

Դարձեալ՝ արդ զիա՞րդ Քրիստոս ոչ ապրեցուցանէ զաշխարհ՝ եղեալ մարդ, որ և քաջայայտ է եթէ որով բնութեամբ գործեցան մեղքն, նովին բնութեամբ եղեն յաւելուած շնորհին. զի Աստուած եղեալ մարդ՝ մնալով Աստուած. զի և մարդ եղեալ Աստուած հաւատասցի, որպէս մարդ գոլով Քրիստոս Աստուած է. զի Աստուած գոլով եղև մարդ՝ և ապրեցուցանէ զհա-

ւսուցեալըն՝ մարդոյ կերպիւ ։
Դարձեալ՝ իսկ եթէ զայս այսպէս
խորհել սխորժէք, զի՞նչ է՛ի ձեռն
մարգարէիցն խոստումն, կամ աւե-
տարանչացն ազգարանութիւն,
կամ առաքելոյն վկայութիւն,
կամ մօրն Մարիամայ անեսիլն, կամ
Հասակին աճումն, կամ ըստ ամե-
նայնի ախտակցութեանցն ցուցու-
մըն, կամ անուանն յառաջ ա-
ծումն. կամ թէ Որդին Աստուծոյ
որդի մարդոյ եղև, և կամ Մարդն
Յիսուս Քրիստոս, որ ետ զանձն
վասն մեր, կամ թէ Պարտ է որ-
դւոյ մարդոյ բազում չարչարանս
կրել և սպանանիլ և յերիր ա-
ւուր յառնել 'ի մեռելոց ։

Դարձեալ՝ զիա՞րդ ասէք եթէ
Աստուած 'ի ձեռն մարմնոյ չար-
չարեցաւ և յարեաւ. քանզի թէ
Աստուած բանն չարչարի, չարչա-
րելի ասէք զՀայր և զՄխիթարիչն՝
միոյ գոլով անուան և միոյ աս-
տուածային բնութեան ։ Եւ յասա-
ցելոցս յայսցանէ է տեսանել զձերդ
մտածութիւն՝ որպէս ոչ երկիւղա-

ծից Աստուծոյ, և ոչ հաւանելոյ աստուածայնոց գրոց։ Մովսէս գրէ, եթէ Աստուած մեր հուր ծախիչ է. իսկ վասն մարմնով գալստեանն Նորա, մարգարէ յեղբարց յարուցէ ձեզ ասէ զտէրն, և զկենդանութիւնն զփայտէ կախեալ, որպէս զի իցէ մարմնոյն տեսանել 'ի կեանս մեր եղելոյ։

Դարձեալ և տէրն զչարչարանս 'ի վերայ որդւոյ մարդոյ կացուցանէ՝ ցուցանելով զըստ մարմնոյն։ Իսկ յաղագս աստուածութեանն իւրոյ՝ Ես և Հայր մի եմք, և ոչ ոք գիտէ զՈրդի թէ ո՞ է՝ բայց միայն Հայր։ Եւ ոչ ուրեք արիւն Աստուծոյ դաւանեցին գիրք, կամ Աստուած 'ի ձեռն մարմնոյ չարչարեալ և յարուցեալ։ Արիանոսացն է այսպիսի իմն յանդգնութիւն. վասն զի ոչ Աստուած Ճշմարիտ զՈրդին Աստուծոյ խոստովանին։ Իսկ գիրք սուրբք 'ի մարմնի Աստուծոյ, և մարմնոյ Աստուծոյ մարդեղեալ, արիւն և չարչարանս և յարութիւն քարոզեն՝ մարմնոյ Աս-

տուծոյ յարուԹիւն՚ի մեռելոց ե-
ղեւ:

Դարձեալ այլ ասիցէք զխա՞րդ-
զտէրն փառաց՚ի խաչ հանեին: Այլ
ոչ զԲանն խաչեցին, մի՛ լիցի. այլ
զԲանն արհամարհեցին, զմարմին
բանին ՚ի խաչին բեւեռեալ. քան-
զի Աստուած էր որ արհամարհե-
ցաւ. մարմնոյ Աստուծոյ և հոգւոյ
չարչարանքն և յարուԹիւնն եղև.
վասն այսորիկ ասէր ցՀրեայսն
տէրն. Լուծէք զտաճարս զայս, և
զերիս աւուրս յարուցից զսա. որ-
պէս ասէ մարգարէն. Փոխանակ
զի ՚ի մահ վարեցաւ անձն նորա, և
ոչ ինքն Բանն: Եւ Յովհաննէս ասէ,
Եւ նա զանձն իւր եդ վասն մեր:

Դարձեալ ասեն ներհակքն. և
եղեցի խոցումն մարմնոյն, իսկ չար-
չարանքն Բանին. վասն այսորիկ Աս-
տուած չարչարելի ասէք, և հե-
տեւաբար ինքեան բարբառէք յա-
ւէտ համաձայնաբար արիանոսացն.
քանզի զայս նոքա օրինադրեն: Եղե-
ցի և ՚ի մեռելոց Բանն յարուցեալ
ըստ ձեզ. քանզի հարկ է ուրեմն ՚ի

դժոխոց զսկիզբն յարութեաննաւ-նաւ, զի կատարեալ էջէ յարու-թիւնն և մահու լուծումն, և որոց անդն հոգւոց՝ արձակումն։ Իսկ ե-թէ զայսոսիկ Բանն կրեաց, ո՞ւր է անփոփոխութիւնն և անայլայլու-թիւն Բանին։ Ո՞ւր են և այնոքիկ որ զամենայն կիրս չարչարանացն՝ Աստուծոյ Բանին վերաձայնեն։ Կարծեմ թէ այսու բանիւս հաւա-սարապատիւք զատանին Արիոսի չարափառութեանն և Պաւղո-սի այլայլութեանն։

Եւ ապա դարձեալ հարցանեն. ո՞վ է որ չարչարեցաւն, ո՞վ է որ խաչեցաւն, Աստուա՞ծ՝ եթէ մարդ. զի եթէ ասիցէ Աստուած, հայհոյ-ութեան յառաջ բերէ բանս՝ ըստ ամբարիշտ հերձուածողացն. իսկ եթէ ասիցէ մարդ՝ հրէական դար-ձեալ կարծեօք վարեսցի. վասն այ-սորիկ գիրք սուրբք աստուածա-պատմաբար՝ 'ի հօրէ քարոզեն ըզ-Բանն, և զնոյն՝ 'ի յետին ժամանակս մարդ ծնեալ 'ի կուսէն։ Եւ կամ մարմնոյն նորա չափաւորութիւն

առնուլ ձեռնարկեն. և ո՞րչափ, կամ զիա՞րդ արտաքոյ գրոց ասել յանդըգնին. քանզի այսոքիւք մտածութեամբք՝ լպրծեցան 'ի հերձուածողացն մտածութիւնս:

Արդ մա ընկալ զբանս սրբոյն Աթանասի առանց երկբայութե, ընկալ և հաւատա, եթէ զնա քեզ համարիս. զի ո՛րչափ փաստաբանեալ յայտնի տայ զտարացոյց այսր աստուածայինն իրի. զոր եթէ անդիտաչ՝ցար երբեմն, և կամ թէ ոչ եղեր ճշմարիտ վերահասու, զղջանալ ունիս ապաշխարանօք. զի ոչ ըստ քոյն ընտրելոյ ճշմարիտ աստուածաբանեցեր, այլ կարի օտար և ցնեռագոյն: Ապա թէ առ այս ոչ զիջանիս հաւանական մտօք, կարծեմ թէ բանիւ միայն բերես առ հաղորդութիւն սրբոյս աստուածազգեստի:

Իսկ յաղագս մարմնոյս բնութեան յառաջ զոր ասացէք ոչ ունել մարգոյս բնութիւն, պարտիք յաստուածախօս տառիցս վկայութենէ հաւատարմանալ, զոր յայտ-

նի առնեմք սատանայոր։ Սուրբ աս-
տուածաբանն Գրիգոր գրէ 'ի դամ-
բանականն Ճառին Բարսղի սրբոյն
անելով. Յաղագս սուրբ բնութեան
յաստուածայինս ոչ էր կարօտ քա-
ջալերիլ յումեքէ։ Դարձեալ 'ի
Ճառին որ յաղագս Կեսարոսի եղ-
բօրն է ասացեալ, գրէ՝ թէ յաղագս
սուր բնութեան իւրոյ առ ու-
մունս աստուածայինս՝ յաղթահա-
րեաց զամենայն հասակակիցս իւր։
Դարձեալ այլուր ասէ. Բնութիւնք
մեծամեծք և սուրբք՝ են պատճառք
սրտմութեան։ Դարձեալ 'ի Կե-
սարոսի Ճառին, Զարմանայի, ասէ,
զի մեծ բնութեամբն իւրով զիջանէր
առ խոնարհս։ Սուրբն Գրիգոր
Նիւսացին գրէ 'ի Ճառս Ներբողա-
կանս, որ առ Նախավկայն Ստեփան-
նոս. Եթէ սատանայոր և Հոգւոյն սուրբ
'ի մեծաբանութիւնն Ստեփաննոսի
տանիլ եղև։ Գրէ և սուրբն Կիւրեղ
աղեքսանդրացի 'ի Ճառին, որ թէ մի
է Քրիստոս. Անշփոթ մնացին բը-
նութիւնքն, որ են առանձինք, որ-
պէս 'ի միաւորութեան հոգւոյ և

մարմնոյ մերոյ՝ առանձնակառն բնու-
թիւնքն միաւորին։ Դարձեալ Յով-
հան ոսկեբերան գրէ 'ի հնգերորդ
ճառն, որ յառաջին թուղթն կո-
րընթացւոց. Մի՞թէ սոքա ամենե-
քեանք ո՞չ համարին աշակերտք.
քանզի բնութիւնք երկուղածք ա-
ռաւել գիտեն յիմարել։

Դարձեալ 'ի բովանդակ երգս
մեր և 'ի պաշտամունս, և 'ի կար-
գաւորութիւնս աղօթից, որպէս
ասէ. Արարեր զգիշերն 'ի հանգիստ
քնոյ տկարացեալ բնութեանս մե-
րոյ. և թէ Մերով բնութեամբ բար-
ձար 'ի վերայ խաչին. և այլն ամե-
նայն հին և նոր կտակարանքս ոչ
ուրացան զմերս բնութիւն, և տան
ուրեք տարացոյց ծածկութեան.
դուզխո՞րդ այսոցիկ ամենեցուն ընդ-
դէմ կռուիս փաստաբան վկայու-
թեամբ, յորմէ պարտիս հրաժա-
րել և 'ի բաց կալ 'ի կեղակարծ
մտածութենէդ՝ աստուածայնովքս
յանդիմանեալ։ Ապա թէ ոչ՝ հա-
տանիս սոքօք յորոշումն ճնչոյ, որ-
պէս և այլ մոլորեալքն. վասն զի

այսոքիկ ամենեքեան մարմնաւորք էին, և մարմնով շրջեցան և երևե-ցան, և ոչ առաւելք · և գոյր առցա բնութիւն որպէս և այլոցս:

Ծանեաք և որ ինչ յաղագս հարցմանն մեր էր առ 'ի Ձէնջ բանք դիմադրականք և խորատականք · զի գրեցիք եթէ այս հարցմունք առ-անձին պարտին լինել ծածուկք և անյայտք, մանկանց առ ծերս խոր-հրդաբար և ծերոց առ իրեարս, և ոչ համաշխարհական թղթովք: Եւ զայս որդին որոտման ոչ արար և կամ պատուիրեաց մեզ · այլ մե-ծաբարբառ հնչմամբ 'ի վերուստ որոտաց զոր 'ի հոգւոյն Աստու-ծոյ ընկալաւ և ուսաց, թէ Բանն մարմին եղև և բնակեաց 'ի մեզ: Եւ այլուր եթէ՝ Ձեռք մեր շօշափեցին 'ի վերայ բանին կենաց: Եւ այլուր, եթէ Հայր իմ մեծ է քան զիս: Եւ այլուր, թէ Ես և Հայր իմ մի եմք: Եւ այլուր թէ Հայր իմ և ձեր · և Աստուած իմ, և Աս-տուած ձեր: Եւ այլուր, եթէ Որ ետեսն զիս՝ ետես զՀայր: Եւ այլ

ուր՝ թէ Գոհանամ զքէն զի լուար ինձ։ Եւ այլուր՝ թէ Ամենայն ինչ որ 'ի Հօրէ, այն իմ է. և զգործսն՝ զոր Հայր գործէ և ես գործեմ։ Արդ միթէ այսոքիկ ամենեքեան հակառակք և այլ և այլք և անմիաբանք իրերաց ասացան և գրեցան։ Եւ այս հերձուած չար մտածութեանց, և կարծիք 'ի հոգին Աստուծոյ տայ զհայհոյութիւն, թշնամութեան հոգւ՝ և ոչ խաղաղութեան զնա կարդալով. քա՛ւ և մի՛ լիցի։ Եւ յաղագս ծածկելոյ անյայտութեամբ զաստուածախօս պատգամս, և զդաւանութիւն ճշմարիտ հաւատոյս քրիստոնէից՝ յայլ ումեքէ ոչ լուաք 'ի սրբոցն. բայց միայն 'ի շանց և 'ի խոզից հրաժարեցոյց աստուածային բանին։ Իսկ զայս մեծաբարբառ ընթեռնուլ և ձայնել ուսաք յամենայն եկեղեցիս քրիստոնէից, և 'ի նստիլ 'ի տան, և 'ի գնալ 'ի ճանապարհի, իբրև զաւետաւոր պատգամս։ Այդ հեթանոսայն է մտան առասպելաց և աղճատանաց՝ որ-

պէս պղխութաղորդայցն այն կէն ղջոր-
ծխս իւրոյ բանիւն ճաշակեալ առ
յայտնութիւն առաքելոցն ծածկե-
լոց, երևեցաւ ընդ հաւատականնա-
հասարակս: Իսկ մերս ճշմարտութե-
նահատակք ոչ այսպէս․ այլ յայտ-
նի և բարձր քարոզութեամբ՝ ի ժո-
ղովս և՝ ի դատեհս և՝ ի քաղաքս: Որ
և առ այս ըստ օրինի ճշմարիտ բա-
րեկամի խորհրդակցեմ քեզ՝ ըն-
թեռնուլ և քննել դպիրս, և հաւա-
տար գոլ սրբոցն և աստուածազգեց-
տիցն յամենայն ձայնս գրոց, 'ի
բանսն, 'ի տեսութիւնսն, 'ի տեղիս,
յընդդիմակն, և առ որս ասեն․ զի
մի հատակոտոր ընդդիմակք և ան-
միաբանք երևեսցին քեզ․ և զկեալ
գտանիցես 'ի ճշմարտութեան ճա-
նապարհէն, և պատժապարտ յար-
դարադատ ատեանին՝ զբարբեռք դը-
րեալս չարաչար մեկնեցին: Վասն
զի ուժոյն նկատել և հայել գեղա-
պանծքն և շքեղքն 'ի ճշմարտա-
խօս բանս իւրեանց․ և թէ ոչ այն-
պէս՝ դատապարտեալք լինին քեզ երբև
ղհողքն Աստուծոյ Թշնամանողք:

Ունիս քեզ վարդապետս զբանս սրբոցն, զորս յիշատակեցեր 'ի վկայութիւն միութեան բնութեանցն. ընդունելիք են և աստուածահաճոյք, և ա՛ռ 'ի յինէն երկրպագեալք և խոստովանեալք: Եւ զոր այժմ յայտ արարեալ առաջի եդաք ձեզ 'ի նոցայոցն բանից, ոչ ընդդէմ նոցա և հակառակ խօսեցաք. այլ առ քոյդ ակար մտածութիւն եդաք, զի զգուշասցիս, և յամենայն լրութիւնս աստուածաշունչ գրոց, զորս վկայս քեզ կարգեցեր. և 'ի մի միաբանութիւն ածեալ կացուսցես անհակառակս և անկռիւս. սրտիւ հաւատալ, և բերանով խոստովանել. որպէս և ես հաւատամ և խոստովանիմ ըստ սրբոյն Աթանասի. Աստուած և որդի Աստուծոյ, և որդի մարդոյ, 'ի մի բնութիւն Բանին մարմնացելոյ: Եւ ըստ սրբոյն Երենոսի, Եկն որդին Աստուծոյ և զգեցաւ մարմին անմեկնելի և անորոշ ըստ կրից և ներգործութեանց միութեան, ոչ որիշ և ոչ այլ և այլ, այլ նոյն մի-

Դարձեալ ըստ Աթանասի. Իսկ եթէ Բանին մարմին, քանզի Բանն մարմին եղև և բնակեաց 'ի մեզ, հարկ է և զմարմնոյն չարչարանս ասել նմա, որոյ մարմինն է: Դարձեալ և զոր առ Ցուլիոս ասէ. Ընդունիմք և հաւատամք, ոչ մարդ էր զոր ծնաւ Մարիամ, և ոչ զոր Հրեայքն խաչեցին. Աստուած ծընեալն 'ի կնոջէ, և Աստուած խաչեալն 'ի Հրէից: Նոյնպէս և զԳրիգորի աքանչելագործին, և զԳրոկղի երանելւոյն, և զԵփրեմի երանելւոյն և Ճգնաւորին. զմերոյ սրբոյ Լուսաւորչին, զԳրիգորի աստուածաբանի, և զայլոց սուրբ և աստուածընկալ հարցս, զորս յիշատակեցեր գրչութբ̅, և որ այլք համանմանք սոցա և հաւատովք, ընդունիմք և հաւատամք սրտիւ, և վերնոցն դասակից և աթոռակից գոչեմք, և 'ի բանս նոցա կապեալ եմք անխզելի պարանօք հաւատոյ. յԱստուածն և 'ի մարդն, 'ի միաւորութիւնն, յերկուութիւնն, 'ի կամսն, 'ի ներգործութիւնն, 'ի կիրսն, մինչև ցյոդս մի

նշանախեցի ոչ պակասեցուցանեմք, և ոչ առաւելումք ՚ի չարէ չքնմանն ։ Զորս ընդունին սոքա ՚ի դաւանողացըն ընդունիմ և ես, և զորս որոշեն՝ որոշեմ և նզովեմ ։ Զքաղկեդոն ոչ գիտեմ, և ոչ զլևոն ճանաչեմ ․ իսկ եթէ բարիք են՝ անձանց և ժողովըրդեանն, և եթէ չարք՝ անձանց և ժողովրդեանն ։ Զօրէնսն նորա ոչ գիտեմ, և դատող մեղաց նորա ոչ լինիմ ՚ի վկայութենէ այլոց ։ Յայս միայն եմ հաստատեալ, զի որ առ մեզ այժմ խօսակցին, եթէ գտցեն յայսց սրբոց դաւանութիւն և հաւատ յաստուածաշունչ գրոց վըկայութենէ, ընդունիմք իբրև զեղբարս իւրաքանչիւր կարգօք և կրօնիւք ․ և թէ սխալեալք են՝ ընդունիմք զզղջումն ․ ապա թէ ոչ՝ աղօթեմք վասն դարձին իբրև զկարեկից անձն, որպէս ուսաք և ՚ի վերայ թշնամեացն աղօթել ։ Հաւատափոխք ոչ լինիմք ըստ քոյդ տարակարծ մտաց, զախտս իւրաքանչիւր անձանց առ ընկերն տեսանելով ։

Իսկ որ յաղագս Հաղբատայ և

Ընեցուոյն առ 'ի ձեռն բանն մեղա-
դրական, և անմտութեան խնդիրք
ղօշաքաղ մտօք՝ արկանել զմեզ ընդ
լծով ծառայութեան ձեր առանց
մատենագրի, ոչ ինչ հոգալ յարև-
ելս, ոչ լսել զբան 'ի մերոց, ոչ տալ
միւռոն և ձեռնադրութիւն: Եւ
զայս մինչև ցայս վայր կամեցաք յօ-
ժարամիտ կամօք, և յառաջեցու-
ցաք 'ի գործ. վասն զի ծանեաք եթէ
Աստուածք էցէք, կամ որդիք
Բարձրելոյն: Նա ոչ այսպէս. այլ
երբեք զմարդիկ մեռանիք, և երբեք զմի
յիշխանաց անկանիք:

Արդ յայսմհետէ լռեալ դադա-
րեսցէ քոյն առ 'ի մէնջ գիր և բան,
մինչև լռեալ դադարեսցես 'ի հպար-
տութեան ախտէդ: Քեզ զինչ գոյ
հաղորդութիւն առ Հաղբատ. այն
մեր է սեփհական, և տեղի յիշա-
տակի. եթէ կայ՝ մեզ կեայ. և եթէ
մեռանի, մեզ մեռանի. եթէ զայն
տամք, ոչ վասն ումեք, և եթէ յայ-
լոց են՝ խափանեմք, ոչ յումեքէ
նեղիմք:

Իսկ ընդ այս կարի յոյժ զար-

մանաւանդ, զի մեր գիր և բան՚ի դէմս ամենեցուն գրեցան, որպէս և ՚ի քոյդ. և դու յայլոց ընկերակցաց քոց՚ի բաց կացեր իբրև զքաջ մենամարտիկ ոք, և զայս պատուական և պիտանի նամակ՚ի քո անուն ձայնեցեր: Այս գոհութիւն Աստուծոյ մեծապէս, զի գրքս ոչ գտան համախոհ այսմ պատուատուն հերձուածոյս, այլ կան մնան՚ի ճշմարտութեանն աւանդ, խոստովանութեամբ սրբոց և աստուածազգեստից հարցն. որոց փառացն արժանասցիմ ՚ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ, որում փառք յաւիտեանս. Ամէն:

# ՆՈՐԻՆ

# ԳՐԻԳՈՐԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Պատասխանի վարդապետացն Հայոց հիւ-
սիսային կողմանց ։

ԶՄԱԿԱԳՐԵԱԼ բանս քրիստոսազգեցից արանց սպասաւորաց բանի՝ ընթերցաք աշխատասէր մտօք. և ծանեաք զոր 'ի սմա բան և իր, և խորհուրդ բանի, մեք և որ ընդ մեզս են սրբոց ժողովք. առ որս պատասխանեցաք փոքր ինչ ընդ որ առ մեզս են ազդմունք յարտաքուստ, և խորհուրդք 'ի սրտից ։ Յայտնապէս հրատարակեցաք յաստուածախօս պատգամս իւր 'ի ժամանակս զգեցման մարմնոյ Ճշմարիտ սիրողն Յիսուս, որոց շնորհեցաւ ընունել, եթէ Պատուիրան նոր տամ ձեզ, զի սիրեսջիք զմիմեանս, զի այսու ծանիցեն զձեզ ինձ աշակերտս

լինել: Որպէս և առ օրհնականին ասաց՝ եթէ յայս երկուս 'ի մի շաբաթարեալ պատուիրանս՝ ամենայն օրէնք և մարգարէք կախեալ են և կախեալ անխզելի: Եւ եթէ՝ որպէս ես ձեզ արարի, և դուք միմեանց պարտիք առնել, և զանձինս եւս դնել 'ի վերայ միմեանց:

Զայսն ճշմարիտ պատուիրան հաստատեցին հետևողքն Տեառն և խաղաղարարքն աւետարանաց՝ ըստ չափոյ պարգևելոյ նոցա 'ի վերուստ. որպէս և յաւել ումն 'ի նոցանէ և ասաց, եթէ Աստուած սէր է, և որ կայ 'ի սէրն՝ բնակեալ է յԱստուած, և Աստուած 'ի նմա բնակէ. և թէ՝ Սիրելիք սիրեսցուք զմիմեանս, զի սէր յԱստուծոյ է: Դնէ և անօթին ընտրութեան Պաւղոս՝ զգլուխ և լրումն օրինացն զսէրն. սիրել ոչ միայն զսիրելիս, այլ և զթըշնամիս. տալ քաղցելոց հաց, և ծարաւելոցն ջուր. լուծանել զԱկն ընդ ական, և զատամն ընդ ատաման. գնալ ընդ վարողն, և տալ ընդ շապկին և զփակեղն 'ի պէտս

խնդրողին, Թերեւս զերդ բարս շահես-
ցուք. և գտցուք Ճշմարիտ անսանեք
և մատակարարք բանին՝ տալ 'ի ժա-
մու զկերակուրն, և արկանել զտա-
ղանդն 'ի սեղանաւորսն, ըստ կա-
մաց պահանջողին տոկոսեօք։

Զոր մեր լուեալ զպայմանն և որ
սոցին նման, և աշակերտեալ ըստ
չափոյ կարողութեան մերոյ, Ճշմա-
րիտ սիրով ջանամք նկրտիմք ոչ
միայն անձին հաճոյ լինել, այլ և
ընկերին 'ի պէտս շինութեան բազ-
մաց, եթէ տացէ տէր սերմն և հաց՝
ըստ նախատես բնութեանն վկայե-
ցելոյ. և սակս այսորիկ տքնիմք և
հոգամք, ըստ նմին և աղօթեմք՝ ոչ
միայն 'ի վերայ եղբարց անդամոց
Ճշմարիտ գլխոյն, այլ և 'ի վերայ
Թշնամեաց և հակառակաց գլխոյն
և անդամոցս. և առ Հայր կարգամք
եթէ Թող սոցա, զի ոչ գիտեն զինչ
գործեն։ Դնեմք ծունր և աղաղա-
կեմք 'ի ձայն բարձր առ յայտնեալ
մեզ Ճշմարիտ աստուածութիւնն,
եթէ Տէր մի համարիր սոցա զայս
մեղս. և ջանամք ածել զգօտն զար-

ձեալ 'ի դրախտն, ուստի արտաքսեցաւ վասն պատճառին. և 'ի զըրկողացն կացուցանել ճշմարիտ վըրկայս որդիութեանն Աստուծոյ. ատանել և զզլացողն՝ զգօն, և զխառազմարար կռուողն՝ 'ի պէտս տեառն անօթ ընտրութեն. լինել ընդ հրեայսն՝ հրեայ և խաչեցող, և ընդ անօրէնսն՝ հռոմայեցի անօրէն և կռապաշտից. ոչ անձին հաճութեամբ, այլ 'ի պէտս բազմաց զի ապրեսցին։

Ցորմէ և մեք զայս ուսանիմք պատուիրանի տուաք, եթէ Ի Քրիստոս Յիսուս չիք խտիր, ոչ հրեայ, ոչ հեթանոս, ոչ ծառայ, և ոչ ազատ, զի ոչ Թլփատութիւն և ոչ անթլփատութիւն, այլ նոր արարած. և որ միանգամ այսմ կանոնի միաբան լինին, խաղաղութիւնն Աստուծոյ 'ի վերայ նոցա և ողորմութիւն. մի Քրիստոս, մի մկրտութիւն, և մի եկեղեցի, զոր ոչ Պաւղոս, այլ որ ինքեամբ ընդ մեզ խօսէր յայտնեաց մեզ։ Զայս և ոչ ուստեք լուաք եթէ պատուիրեաց մեզ ոք 'ի սըրբոցն եթէ այլ Քրիստոս էր որ յա-

ղագս Հայոց եկն, և այլ որ յա-
ղագս Հռոմոց, և այլ որ յա-
ղագս Փռանկաց, հոգևորականք մի-
մեանց, այլ և այլ պատուիրանք, ա-
ռել զմիմեանս և նախատել. անէ-
ծանել և հայհոյել և խռովս հա-
մարել: Եւ այսու պատճառաւ համար-
ձակեցաք գրել առ նոսա խաղա-
ղական գիր 'ի խնդիր սիրոյ` սկսեալ
ոչ առ 'ի մէնջ, այլ 'ի մերոց սրբոց
նախնեաց. զոր թէ այլ ումեք առ
'ի ձէնջ ոչ է գիտելի այդ, 'ի Վար-
դանայ չէ անտեղեակ թէ որքան 'ի
վաղուց հետէ էր սկսեալ, և որչափ
և քանի՞ էր 'ի նոցանէ առ այս խըն-
դիրք յայտարարութեանց յայտնել
և կատարել: Նախ երկուց բնու-
թեանցդ բան, և կամաց և ներգոր-
ծութեանց. երկրորդ, ընդունելոյ
զժողովն Քաղկեդոնի, և զնորայն
տումարս. երրորդ, 'ի սուրբ խոր-
հուրդն ջուր խառնել և խմոր 'ի կիր
արկանել. չորրորդ, ասնել զմիածինն
սուրբ 'ի պտղոյ ձիթենւոյ. հինգե-
րորդ, բառնալ զխաչեցարն 'ի սրբ-
բասացութենէն. վեցերորդ, ըն-

ծանել զպահս առաջաւորին․ եօթ-ներորդ, առնուլ զհրաման կաթողիկոսութեանն ՚ի թագաւորէն․ ութերորդ, հաւասարել ընդ նոսա տօնիւ ծննդեանն։ Եւ այսմ ամենայնի հակառակ և դիմամարտ եւս էր յառաջին․ և խմս գրով և բանիւ հազիւ ուրեմն ածի յայդ, զի անուանեցին զմեզ եղբարս զրպարտեալս ՚ի միմեանց․ և վկայեցին եթէ ծանեաք յերգս ձեր և յօրհնութիւնս՝ որ է շարականքդ, որ առ Աստուած զճշմարիտ հաւատոյ ձերոյ ուղղափառ դաւանութիւն․ և զամենայն խնդիրս լուծին և զհայցուածս իւրեանց։ Բազում և այլ բանս խաղաղութեան և սիրոյ գրեցին և խօսեցան։

Վասն որոյ գրեցէք նմա եթէ այս շարամանեալ ունիք ընդ ինքեան զաղանդն Նեստորի, և զչարութիւնս նորա․ առ որս ասելի է, եթէ մեք ուստի՞ ծանեաք զՆեստոր և զաղանդ իւր չար։ Ի Սանահնինն խօսեցաւ, եթէ ՚ի Հաղբատ հրատարակեցաւ․ եթէ ՚ի մայրաքաղաքն

մեր Անի առաջնորդ կարգեցաւ և այնու խոստացաւ։ Նոցա էր և՚ ի նացանեէն ել և ՚ի նոցանէ խոստացաւ և նզովեցաւ և նզովք մինչև ՚ի վախճան. և յայլ ումեքէ ոչ բռնադատին խոստել զնա, բայց եթէ յանձանց և ՚ի գիտութենէ իւրեանց։ Մեք յանուն Եւտիքէի, Տիմոթէոսի և Դէոսկորոսի զխմբդ կոչեմք, և անուանեմք զնոսա սուրբս, և ՚ի բանս նոցա կապեմք իւրև յերկաթ։ Աղզանկենցք եմք նոցա բանիւ, եթէ զաւառաակենցք քաղաքաւ. հարազատ ըստ մարմնոյ, եթէ ծնունդք ըստ հոգւոյ։

Առ մեզ մի լիցին խոստեալք մերն սուրբ լուսաւորիչք և հարք. այլ պատուեալք և պաշտեալք, սուրբն Գրիգորիոս և զարմն իւր սուրբ. սուրբն Ներսէս և Սահակ, և որ ըստ նոցայն յաստակքն և Ճշմարտախոհքն, և նոցայն քարոզեացն քաջութեան յեկեղեցիս մեր, և յաղագս նոցա բանակառուցուք եթէ զոցին հակառակք։ Որ նոցայն են՝ իւրեանց է զիտելի լուսութեան և վատութեան նոցա։

Ածցուք 'ի մէջ և զայնոսիկ՝ որք նոցա են, և մեզ քաջ ատեղեակք և յայտնիք, զսուրբ և զաստուածազգեստ հարսն, և զսուրբ բանս նոցա. զսուրբն Աթանաս, և զսուրբն Գրիգոր Նիւսեայ, և զմիւս Գրիգոր աստուածաբանն, և զսուրբն Բասիլիոս, և զքերան ոսկի սուրբն Յովհան: Միթէ այսոքիւք 'ի նոցանէ խռովեցա՞ն, և առ 'ի մէնջ պատառեցան. միթէ ո՞չ ընթեռնուն յարաժամ 'ի սրբոյն Աթանասէ ըղգրեալսն, զոր յաղագս անշփոթ խառնմանն յատուկ և կատարեալ բնութեանցն գրէ ասելով. Ի նմանութենէ Տեառն որ առ մեզ՝ մեծ է օգուտն, զի և մեք նմանեսցուք առ նա. քանզի թէ ոչ ինքն էր նըմանեալ առ մարդիկ, պարտ էր 'ի նմանութիւնս մեր իջելոյն՝ ըստ այսմ մանաւանդ նմանիլ, ըստ որում փոխադրութեան էաք կարօտ ըստ ախտից, զի զայսոսիկ յանախտութիւն փոխեալ կացուսցէ: Եւ մի՞ ոք անհաւատ լիցի յաղագս ախտիցն լսելով համարեալ փոփոխելի

աստուածութեանն. այլ առնել 'ի նմա ախտոք՝ 'ի մարմնական և յանձնական շարժութենէ ածցէ զմտաւ և առնել և պատառել. քանզի վասն այսորիկ առնել եղև, զի յաղթեսցի. և վասն այսորիկ յաղթեցաւ, զի ամենայն մարդկային բնութիւն ըստ ազգակցութեան բարեգործեսցի. քանզի անտի սկսեալք փոխակերպիմք ամենեքեան, յախտացելոց անախտք, և 'ի մեռելոց կենդանիք կազմեալք: Արդ մի՛ ոք ամբոխեսցի յանհաւատութիւն, եթէ ասէ Աստուած գոլով Տէրն միանգամայն և մարդ՝ Այժմ անձն իմ խռովեալ է: Քանզի այս լինէր աստուածութեանն թողացուցեալ մարմնոյն ամբոխել, կարող գոլ աստուածութեամբն 'ի բաց մերժել զխռովութիւնն, այլ՝ ոչ կամեցեալ, զի մի՛ զնմանութիւնն որ առ մեզ՝ լուծցէ: Այսպիսի ինչ է իմանալ և յորոց առ մեզս իրաց, որպէս զի խառնեալ մեղր առ ջուր՝ ոչ միայն փոխադրի, այլ ջուրն յաւելու, և որ 'ի կարգին է:

Ասեմք, եթէ անգիտանան և ըզհարցմունս Արիանոսին և Քաղկեդոնին, և զպատասխանիսն սըրբոյս. և թէ որպէս և քանի՛ գեղեցկայարմար բանիւք բաժանէ և միաւորէ 'ի կիրս մարդկայնոյն և աստուածայնոյն՝ խոնարհագոյն և բարձրագոյն: Հաւատալի լիցի մեզ և այս՝ եթէ բանք սուրբ հօրն Գրիգորի Նիւսեայ զանխուլ են 'ի նոցանէ և ոչ են ընթերցեալ, և յարկեզս գրոց ամբարեալ զսուրբ բանս նորա, և ընթեռնուն՝ առանց միջնորդի և միաբարբառ խոսիւք զմիաւորութիւն անձին առ մարմին. և զյաւելուածն և զպակասութիւնն էութեանն յէութենէ՝ Պերփէռւրոսի իմաստնոյ վկայութեամբ. և կամ այլ բովանդակ բանք նորա անյայտք են 'ի նոցանէ, և ոչ ընթեռնուն զգերեզմանական ասացեալ Ձայնս որ 'ի վերայ Տեառն, թէ զո՞վ խընդրեաց Յովսէփ 'ի Պիղատոսէ, և կամ վասն ո՞յր աղաչէր և աղերսանօք խնդրէր, և կամ զո՞վ պատանեաց անշնչացեալ և եդ 'ի գերեզմանին:

Եւ կամ ո՞րպէս դարձեալ 'ի դիմաց հրեշտակին աւետարանէ կանանցն՝ տուեալ զբանս նորա, թէ Յարեաւ որպէս ասացն, առաջեաց ըստ սովորութեան իւրոյ զճշմարտութիւնն. և զոր բանիւ յառաջ ասաց, զայս և գործովք կատարեաց, և անմահ աստուածութիւն նորա անմահ մնաց. և 'ի ժամանակի մահկանացու մարմինն նորա մարմնական աչօք զքուն մահու յանձն էառ, և անկեալ որպէս զառիւծ՝ ննջեաց թագաւորապէս, և զարթուցեալ յարեաւ, և ելեալ անդուստ որպէս Աստուծոյ իսկ վայել էր, և որ 'ի կարգին։

Ածեմք զմտաւ ահաւասիկ, եթէ անլուր են նոքա 'ի բանից սրբոյն Գրիգորի աստուածաբանի. ո՞չ ընթեռնուն իւրական բանիւն յաւուր տօնի ծննդեանն Քրիստոսի զառ 'ի նմանէ խօսեցեալ զաստուածաբանական ձայն, եթէ Քրիստոս ծնեալ լինի, և Քրիստոս յերկնից և 'ի մարմնի և 'ի կուսէ և 'ի վերայ երկրի. և զի 'ի ցնծութիւն

կոչէ զպարարածս յաղագս երկնաւորին, և ապա երկրաւորիս․ անմայր յառաջնումն, անհայր յերկրորդումն, լուծանելով զօրէնս բնութեանն, որով ծնաւ մեզ մանուկ, և տուաւ մեզ որդի․ անմարմնին մարմնացեալ, և բանն թանձրացեալ, և անտեսանելին երևեալ և եկեալ 'ի շօշափումն, և անժամանակն ըսկիզբն առեալ ժամանակի․ և որ յառաջին որդի էր ծոցածին, այժմ որդի եղև կուսածին․ օծեալ և փըրկիչ, և 'ի Հօրէ անբաժանելի, որպէս երէկ՝ նոյն և այսօր և յաւիտեանս յաւիտենից։ Որք ոչ հաւատացին զգեցման մարմնոյն՝ գայթակղեցին․ և որք 'ի մարմնոյն արկաբացան՝ ծիծաղեցին․ իսկ որք թերակատար միտք ջատագովք լինին նորասքանչ գործոյն՝ լեզուապարեցին, յանհաւան անդունդս լըղալով։ Վասն զի եղև նոր զարմանք․ և երևեցաւ Աստուած մարդ ծնընդեամբ, որ էրն և միշտ էն, և որում գեր 'ի վերոյ էր մարդկայնոյս բանի և պատճառի գոլն, յաղագս մեր

եղև, և ՚ի վերջին ժամանակի. որ է ինքն Աստուծոյ Բանն նախ քան զյաւիտենանս, աներևոյթն, անհասանելին, անմարմինն, ՚ի սկզբանն սկիզբն, ՚ի լուսոյն լոյս, աղբիւր կենաց և անմահութեան, կերպարան սկզբնատպին, այսինքն նման ծնողին՝ շարժեցեալ ծննդեամբ ՚ի Հօրէ, և կնքեալ ՚ի բազմորդութենէ. ոչ փոխեալ ՚ի նմանութենէ Հօր, և ոչ արտաքսահման եղեալ բան, յիւր ստեղծեալ կերպարանն գայ, զգենլով մարմին և հոգի, զի սրբեսցէ և մաքրեսցէ զնմանակիցն իւր կերպարանն՝ աստուածային խառնմամբն :

Յոր հայեցեալ երանելիս զարմանայ հիացմամբ և ասէ. Ո՛վ նոր խառնմանս, ո՛վ սքանչելի խառնուածոյս : Իսկ զրպարտողքն և դաւինքն համարս առնուն յաստուածութենէն, և լինին տուխք զովելի խորհրդոյս այսորիկ, և խաւարին առ ճշմարիտ լոյսն, և յիմարանան յիմաստս աստուածայինս, ստգտանելով զբարի և զաստուա-

ծավալելուչ գործս Աստուծոյ ,
համարելով փոքր զյաղագս մեր
նուաստացեալն , զի տացէ զառող-
ջութիւն ախտացելոյ բնութեանս ,
և հանցէ 'ի վեր զկամս անսանձա-
ցեալս մեղօք : Քանզի տառապեցաւ ,
այլ խերև զմարդ , զի կրկնեն էր ․ ո-
րով և վաստակեցաւ , և երկեաւ ,
և արտասուեաց , քաղցեաւ և ծա-
րաւեցաւ օրինօք մարմնոյն ․ և եթէ
խերև զԱստուած , զինչ այս , զի ա-
մենայնիւ զկամս Հօր պարտ էր կա-
տարել ․ յաղագս որոյ և մատնեալ
աւի , զի մի թուեսցի ընդդէմ Աս-
տուծոյ ․ յորս ոմանք գայթակղեն
'ի բարձրագոյնսն և 'ի խոնարհա-
գոյնսն ․ միացուցանեն և ժողովեն
չարաչար , և կամ բաժանեն հա-
տանեն անստուածաբար : Սոցա
բաժանել պարտ էր , և նոցա միա-
ւորել :

Եւ զիա՞րդ բազումս յերկարեցից
զբանս ․ միթէ չորեքեան գիրք սա-
րա որ առ մեզ , ո՞չ բովանդակեն առ-
նոսա , և այլ ևս յոլովագոյն ճառք ․
միթէ զանխլացմո՞ւ 'ի նոցանէ առա-

ցեալ բանն՝ եթէ Աստուած խա-
չեալ, արեգական խաւարեալ։ Եւ
կամ աղաւաղեցի՞ն զմիւս բանն, ե-
թէ Որդին Աստուծոյ, և չարչա-
րանք և մահ Աստուծոյ։ Զորս մեր
'ի ձեռն առեալ զինինքն ընդդէմ
նոցա 'ի պատերազմ, հարկանելով
յաջ և յահեակ. զոր իմաստնոց և
բարեպաշտից անձանց՝ ոչ վայել է
յաստուածաշունչ գիրս զմիոյ բա-
նէ բուռն հարկանել, և զայլովքն
զանց առնել. և կամ հայհոյել 'ի
լուրս բանին, և զմիւս ոչ քննել.
այլ սապղմսել հոգւով և մտօք, և
քննել զգիրս աշխատասէր մտօք
ուսաք. զի առանց սորոյ՝ հնչումն է
պղնձոյ, և թնչումն սրնգի։ Հաւա-
տալի՞ է մեզ եթէ բարձին 'ի միջոյ
եւրեանց զբանս սրբոյն Բարսղի, և
զաստուածաբանական Ճառս Նա-
րա, ընդ նմին և զմեկնութիւնս սր-
բոյն Յովհաննու ոսկեբերանին հին
և նոր կտակարանացն. և կամ թէ
հաւատաբանութիւնն Կիւրղի ա-
ղեքսանդրացւոյ, և գիրք պարապ-
մանցն. և կամ հաւատոյ խոստո-

վանուԹիւն սուրբ ժողովոյն Նի-
կիոյ՝ կորուսանո՞ղ եղև յինքեանց. և
կամ Թէ մեզ աւանդեցին, և ին-
քեանք Թափո՞ւր մնացին: Եւ կամ
Թէ քանի՞ ամբարեալ ունէին առ ին-
քեանս բանս գիտուԹեան գրով և
անգիր, որով և մայր անուանեցան
գիտուԹեան, և յոմանց ներհա-
կաց՝ ճարտարք Յունաց: Եւ կամ
Թէ քանի՞ հերձուածողս հրատա-
րակեցին՝ և բարձին 'ի միջոյ ըղ-
զաղձն և զորոմն, հաստանելով և 'ի
բաց խլելով աստուածայնին սրտիւ:
Արդ եԹէ զայսպիսի մեծ և զող-
ջոյն ազգ, յորոց միջի Քրիստոնեայ գի-
տուԹիւն և պայծառանայ եկեղե-
ցի Աստուծոյ՝ պարտիմք մոլարս և
ագէտս կոչել, և սնոտի զյոյս նոցա
'ի բանս և 'ի գործս, հաւանիմ և
ես. վասն զի Հայ եմ ճշմարիտ և
աներկբայ սրտիւ: Ապա եԹէ եղ-
բարք եմք համաշունչք, և միոյ ո-
րովայնի ծնունդք, և միոյ ստեանց
դիեցիկք, և միոյ ճշմարիտ գլխոյ
անդամք, և այսու աղագաւ եղբայ-
րական սիրով կոչեն զմեզ 'ի խա-

զաղտութիւն, պարտիմք զհետ գնալ աներապաշտես և յօժարամիտ կամօք: Վասն զի զայս պատուէր առաք. և զայն ոչ իբրև զգտեալս 'ի կորուստենէ, և կամ իբրև զդարձեալս 'ի մեղանաց և 'ի սխալմանէ, այլ իբրև զհեռացեալ եղբարք գաւառաւ և ժամանակաւ. որ և զայս թշնամութիւն գործեաց ընութիւն հնացեալ սովորութեամբ՝ ոխակալութիւնն. զմիջնորմն ցանկոյն քակել, և զկրծիմն 'ի բաց բառնալ՝ եթէ գոյ հնար, և մի անիծանել յեղբարց, այլ օրհնել, շահել և շահեցուցանել զնոսա. քննել զխնամն, և հայել յօգուտն. զի իմաստնոցն աչք 'ի գլուխ իւրեանց է, ասաց իմաստունն, և որք կամաւ կուրանան, անձանց բերեն զմեղադրանս:

Արդ յստակ միտք և աներկևան սրտիւ հայիլ արժան է մեզ 'ի բանս յայս. զի եթէ իցէ երկուց ոմանց ընթանալ ընդ մի ճանապարհ, լիցի՞ հնար միոյն մոլար լինել, և միւսոյն ուղղորդ. եթէ ոչ արդ ուղեկիցս զմեզ արժան է իմանալ, և ճանա-

պարհ՝ զբանս աստուածաշունչ գրոց, և առաջնորդ զբանս սուրբս, զոր վերոյ գրեցաք։ Զոր այսու թշնամութիւն՝ որով վարեցաք, հարկ լինի մեզ զմի ոք 'ի սոցանէ սուտ կացուցանել, կամ զբանս, կամ զտողս բանիցն, և կամ զընդունողսս՝ եթէ ոչ են համաշունչք. և կամ թէ զխո՛րդ ոչ խոսեցան, և կամ թէ մի ոք առ 'ի մէնջ զբարուոք գրեալսն չարաչար ընթեռնու։

Եւ արդ հաւատարմացաք 'ի սրբոց արանց, եթէ 'ի բանս աստուածաշունչ գրոց անմիաբանութիւն ամենևին ոչ գտանի, և ոչ հատակոտոր ինչ և գար և կոճատ, այլ միաբան և միախորհուրդ 'ի հոգւոյն Աստուծոյ խօսեցեալ և շարայարեալ, և հիւսեալ առ միմեանս գեղեցիկ յարմարութեամբ. երբեմն ըստ ժամու պիտոյիցն ընդդէմ ներհակացն բաժանելով, և երբեմն ժողովելով. այլ երբեմն տալով զնուաստագոյնսն մարմնոյն, և զբարձրագոյնսն Աստուծոյ։ Ոչ գթեցան 'ի բաժանելն յատկու-

Թեւամբք և կրիւք, և ոչ խառնեցան 'ի միաւորութեանսն և 'ի ժողովսն: Եւ յաղագս աստղացն չունիմք ինչ ասել, վասն զի սուրբք են և սրբոց համապատիւք, և ընդունակք Հոգւոյն: Իսկ յաղագս նոցա՝ վասն որոյ բանս է, յայտնի է սորուգապէս, զի ակն են աղբեր, և ամենայնիւ առ 'ի նոցանէ առատանի բըղխեալ ջուր զխոսութեան: Արդ եթէ զոյ հնար՝ յայն զանանագոյն լինել ջրոյն, և 'ի հեռաւորացն միջոցաւ և ընդուզք՝ քաղցրագոյն և անուշահամ լինել, ապա պարտիմք զպտուղացուցանել զնորա իբրև զմոլորեալ եղբայրս, և յիւրեանց ջրոյ քաղցրահամութենէ զօվացուցանել. զի ընտիր մշակք երևեցուցք բանին՝ զեղբայրսն շահելով:

Այլ զի զրեցէքն, եթէ յաղագս անչափոթ միաւորութեանն այլ ինչ իցէ բան՝ Աստուծոյ է գիտելի, համատաս և ես. զի որում լի են երկինք և երկիր փառօքն, և քննիչ է խորհրդոց և երիկամանց, զիւրն բնութիւն ոչ անպիտանայ: Իսկ

ստացեր, թէ գիտեմ և ես զայդ, լաւ էր. մի՛ ստերիւրեր զճշմարտութիւնն, և քուամք անուաս ախտի ջատագով. այլ ուղիղ տեսցուք, և զամօթի հարցուք: Ո՞րդէս առաքեալ և սուրբքն զայս գրեցին. զի խորշելոմն 'ի հերետիկոսէն ամենայն եկեղեցւոյն՝ պատկառեսցի, և յայլոցն միաբանութիւն եկեսցէ: Իսկ այսօր բարձաւ պատկառանքն, և տիրեաց միմեանց արհամարհութիւնն. և եղաք հերետիկոսք ամենեքեան, և ոչ թէ ոմանք 'ի մէջ մեր. զի հերետիկոսն հերձուածող թարգմանի. և ահա տեսանեմք զամենայն ազգս քրիստոնէից 'ի միմեանց հերձեալ և պատառեալ, և իւրաքանչիւր՝ եկեղեցի և ժողովարան և աթոռ հաստատեալ: Արդ այժմ չէ օգուտ 'ի միմեանց հրաժարելն, կամ ընդ անհնազանդսն ոչ հաղորդելն. զի եթէ խորշիս, ո՛չ թէ ո՛չ ունի այլ եկեղեցի, և 'ի քոյոյդ արտաքս ելանելն ամաչէ. այլ յանարգելն 'ի քէն՝ գնայ յիւրն եկե-

դիցի և յազգ. և վասն քո խոստելոյն, ոչ թէ պատկառէ՝ այլ պարծի: Դարձեալ և դու տես զքեզ. զի ոչ թէ վասն յուղղութիւն ածելոյ ոչ հաղորդիս սիրով և մտակցութեամբ, այլ մեծապանծութեամբ և արհամարհանօք, խրոխտալովն յանձն, և զիս առ ոչինչ գնելով. որ ոչ է բժշկութիւն, այլ թշնամութիւն չար: Եւ ես չարագոյն այդ, զի ջատագով թիւր մտացդ զուղիղն առնուս օրէնս առաքելականս: Խորշելով և հրաժարելով թերևս 'ի քում ազգէդ և 'ի քո եկեղեցւոյդ՝ կարես զոք յուղղութիւն ածել, կամ քեզ հաղորդ վասն ամաչեցուցանելոյն առնուլ. իսկ զայլ ազգ՝ որ հաւանեալ է թէ քան զքեզ պատուական է և ուղիղ, երբ է հնար այլազգ հաղորդ ընդունել, բայց թէ սիրով և խոնարհութեամբ և Քրիստոսի օրինօքն՝ հեզոյն և մարդասիրին: Նա որ արարիչ էր, զիւր արարածս ոչ կամեցաւ բռնութբ̅ և սաստիւ ուղղել, զի չէր հնար. իսկ

տրտաքս ելանէ. այլ աղծէ զխ-
խորհուրդ չար բամբասանացս, որ
'ի սրտէս արտաքս գայ . և սակս այ-
սորիկ զնա 'ի հաւատոյն որ 'ի Քրիս-
տոս՝ տայ բամբասել որպէս Թերի:
Այսպէս խօսեցարուք և այսպէս
տրարէք, որպէս զի ազատութեան
օրինօքն դատիցիք, և մի՛ ծառայու-
Թեամբ նախանձու: Սուրբ Հոգին
իմաստութեան 'ի Թշնամանող և
'ի հակառակող բերանոց փախչի,
իսկ առ խաղաղարարն բնակէ . ըստ
որում գրէ զսոյն Յակոբոս, Թէ
«Նախանձ և հակառակութիւն և
դառնութիւնք գոն 'ի ձեզ . մի՛
պարծիք սուտ առնել զՃշմարտու-
Թիւնն. ոչ է իմաստութիւնս այս
իջեալ 'ի վերուստ, այլ երկրա-
ւոր, շնչաւոր և դիւական. զի ուր
հեռ և նախանձ, անդ և անկար-
գութիւն և ամենայն իրք չարք »:
Ահաւասիկ դերև տրար զհակա-
ռակութիւն հակառակողացն. զի
այսոքիկ 'ի շնչաւորէն եկին մար-
դոյ յառաջ և գան:
Յորմէ անդի տուեալ, եղբարք,

և երկնաւորխումբ քահանայապետա-
կան սուրբ ժողով, բացցուք զբե-
րան, և ձգեսցուք 'ի պէտս առա-
ջադրեալ աստուածայինս գործոյ՝
զվերբին իմաստութեանն զհոգի, որ
է աղաւնի, սուրբ, խաղաղարար,
հեզ, գթութահաւան, լի ողորմու-
թեամբ և պտղովք բարեաց. և խա-
ղաղութեամբ սերմանի այնոցիկ՝
որ առնեն զխաղաղութիւն: Զայս
բարի սերմն, եղբարք, սերմա-
նեալ յանձինս՝ հնձեմք զպտուղ
նորա 'ի կեանսն յաւիտենից ընդ
ամենայն սուրբս:

Արդ տեսանեմ զի ոչ միայն օ-
ծութեամբ Հոգւոյն ընտրութիւն
առնէք զանազան իմաստից հո-
գւոյն, այսինքն երկնաւորին և եր-
կրաւորիս, այլ և զպտուղ վերին
իմաստութեանն սկսայք տալ այ-
սուհետև: Զի ահա տեսանեմ ըզ-
ձեզ զուարթս դիմօք երբև զմար-
գագետինս՝ 'ի ձմերայնոյ կապա-
նացն զերծեալս: Ո՛վ սքանչելեացս,
ահաւասիկ զանազան ծաղիկք սի-
րոյ յանձինս ձեր փթթեալ՝ սկսան

Մաղթեսցուք այսուհետեւ, զի տացէ Տէր զքաղցրութիւն եւս առաւելապէս, եւ աճեցուսցէ յերկիր մեր ցօղով Հոգւոյն սրբոյ զայս սերմն. Թերեւս զօրութեամբ նորա եւ զպտուղն կարասցուք տալ, որպէս կամօք այսօր՝ եւ յառաջի ժամանակս արդեամբք նորոգել զխաղաղութիւն եկեղեցւոյ Քրիստոսի: Զի եւ ընդ նմա՝ նորին շնորհիւն լիցուք խաղաղարարքս որդիք Աստուծոյ հօր անվախճան խաղաղութեան, արժանաւորապէս փառաւորել զՀայր եւ զՈրդի եւ զսուրբ Հոգին յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

# ՆՈՐԻՆ ՆԵՐՍԵՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

# ԹՈՒՂԹ

Առ Քրիստոսապսակ Իշխանն Մեր Ինքնակալութեամբ Լեւոն, 'ի Նուաստ Ներսիսէ որ 'ի Տարսոն սրբոյ եկեղեցւոյն պաշտօնէայ:

ՊԱՏՐԱՍՏ լերուք տալ պատասխանի հեզութեամբ ամենայնի՝ որ հարցանէ վասն յուսոյն որ է 'ի ձեզ, խրատ տայ մեզ գլխաւոր առաքելոցն Պետրոս. և մեք 'ի շնորհացն Աստուծոյ, որովք զօրացեալ եմք բանիւ՝ պատրաստ եմք պատասխանատուութեան նոցա,

հոգեւորս, այլ և 'ի մարմնական իմաստութենէն բաժան ցուցանէ զնոսաին՝ նոցին գրերն. տխմարք և անկարգք, և յիմար բանից շաղակրատաւք, որ և բուն ոգէոքն կարող են յայս երկրաքարշութիւնս զնոսաին ճանաչել. և մեք տարաք զշատախօսութիւնն նոցա իբրև զայր երկայնամիտ, և բազմապատիկ խորհրդովք. որք ոչ ունէաք ընդ նոսաին հարց և փորձ, և ոչ ծանօթութիւն, և յանդուգն բերանոցն նախատէաք. զուարձացեալ յայն մեծ երանութեան որ ասէ, « Երանի՛ է ձեզ, յորժամ նախատիցեն զձեզ, և ասիցեն բան չար զձէնջ սուտ վասն իմ. ցնծացէք և ուրախ լերուք՝ զի վարձք ձեր բազում են յերկինս »:

Իսկ յետ այսր չեմք և ոչ զձեր աստուածպաշտութիւնդ ձանձրացուցեալ, և ոչ մերոյ ճշմարտութեանն՝ որում: տեղեակ էք եւ յայտարարութեամբ, վրէժխնդրութիւն պահանջեալ յաստուածազօր կարողութենէդ. նախ՝ զի

բաղձանհօղս էք, և երկրորդ՝ զի
մեք առ բամբասողան անխորժելք
ըստ Քրիստոսի անյիշաչար լինել.
Երրորդ զի կարծամք էք զլոյս բա-
նի ունկնդրութենէ, որով մեր ճշ-
մարտութիւնս փայլէ: Քանզի այլ
անգամ եղև այս հարկս, և խնդրե-
ցէք ՚ի մէնջ բան՝ որ առ մեզ ուղ-
ղութեանս վկայ. առաւել զլոյս սըր-
բոց վկայութեամբ, որ զամենայն
ժամանակս ՚ի հաւանութիւն
նուաճէր ՚ի սիրելն զուղղութիւնն.
և ծանր եղև ձեզ ընթերցումն,
կամ այլոց զնոյն ցուցանել. ու-
սկս և ունիք հարկ յԱստուծոյ՝
ոչ վայրապար ածեալ առաւել ընդ
մեզ, այլ ՚ի վրէժխնդրութիւն այ-
նոցիկ, որ զչարն գործեցին: Նոր
տեսայք զձեզ առ այն քննութիւնն
և վրէժխնդրութիւնն առաքեալ,
ունիցիք զլուծ խոնարհութեան, և
նախիցէք լռութեամբ ՚ի սմին: Զերք
մուս և եղ ՚ի ձեր արքունական
ապարանս. և ոչ ՚ի յոյզ և ՚ի խըն-
դիր հօգևոր ուղղութեանց, կամ
մարմնականն ձրից: Ոչ. պարծիցէք

Այս լուսաւորութեամբս կամ դադա-
րեալ, և առ Աստուած խօսակցու-
թեամբ պարապեալ. որոյ կամ ա-
ռաջի մտաւոր հառաչմամբ, և ան-
մռունչ հեծութեամբ, և միշտ ար-
տասուաց հոսմամբ, ոչ դիտելով
զերևելիսս, այլ զաներևոյթսն. և
զվերինն խնդրեմ, ուր Քրիստոսն
նստի ընդ աջմէ Աստուծոյ, և անդ
լնուլ զաղօթս իւր առ իս մաղ-
թեմ, որ ասաց. Հայր, կամիմ զի
ուր ես իցեմ, և սոքա ընդ իս լի-
նիցին. զի տեսանիցեն զփառս իմ,
զոր ետուր ինձ: Այն փառացն և
տանն վայելչութեան տուփանօքն
զբաղեալ իմ աղքատութիւնս,
թեթև ունիմ զՁորոյգետոյ եղ-
բարցն և վարժապետացն անար-
գանքն, և զձեր փառքն: Եւ ես
լուսաւորեալ 'ի վայելչութիւնն՝
հեղում զարտասուս առաջի Աս-
տուծոյ Հօր՝ միջնորդաւն Յիսու-
սի Քրիստոսի, և զձեզ 'ի նոյն
տեսութիւնս լուսաւորել, և այ-
սու դիտութեամբս՝ երևելեացս
արհամարհողս առնել:

Եւ միթէ՞ ես յայս ընթացս և 'ի զբաղմունս կամ զեզերեալ, զերանելին և ընդ Քրիստոսի լինելն լաւ համարելով, և զկեալն 'ի մարմնի ոչ կարևոր, որովհետև ոչ եմ յօգուտ ձեր, եկն իշխողդ մեր Հեթում, և երբ առ իս 'ի ձեռն պատուէր հրամանի՝ որպէս առ տհաս մանուկ. և յայս համառօտեցան բանքն, թէ անկարգ է իմ ընթացքս և անօգուտ. և չէ ընդ շաւիղս երանելւոյ հարց մերոց Գրիգորիսի Վկայասիրի, և Նորին համանունին՝ որ յԵգիպտոս, և որ զկնի Նորին սուտ հայրապետս Գրիգորեաս, և Նորին եղբայրն Ներսէս. և ես սահերիւրեալ գնամ 'ի նոցա շաւղաց; և դուք և այլ Հայք՝ նոցին ընթացակիցք: Եթէ ոչ էր յայս, արժանի էր հայրապետութեան և պատուոյ. սակայն այս մերկացուցանէ զիս 'ի պատահմանէն պատուոյ. և ոչ միայն զիս, այլ՝ և ձեզ լինիմ պատճառ նախատանաց 'ի Զօրոյգեաստեացն. որք և անէծս վայրապար խօսին 'ի

զճշմարիտն իբր զանպիտան, և ըզ-մեծն որպէս զփոքր, և զճշմարիտն որպէս զսուտ, ոչ հաւանիմ. և 'ի վերայ սորին ճշմարտութեան նա-խատիմ և մեռանիմ. քանզի կայ Քրիստոս և ասէ առ իւր ծառայս. Որ ոք լուծցէ մի ինչ 'ի պատուի-րանացս յայսցանէ 'ի փոքունց, և ուսուսցէ այնպէս զմարդիկ, փոքր կոչեսցի յարքայութեանն երկնից. և անդ մեծ լինել ցանկամ՝ և ոչ փոքր։ Եւ նորին առաքեալքն պա-տասխանել ուսուցին այժմու խու-ժանիս՝, որպէս նոքին Հրէից՝ թէ հնազանդել պարտ է Աստուծոյ առաւել քան մարդկան։ Եւ Պաւ-ղոս ասէ համարձակ. Եթէ մարդ-կան հաճոյ լինէի, ապա Քրիստո-սի ծառայ ոչ էի։

Եւ արդ եկ, բարեպաշտ իշխող, և զմեծութիւն և զփոքրկութիւն իւրիս քննեսցուք, զոր ասես ար-համարհել 'ի պէտս հաճոյից մարդ-կան. թէ մերս փոքր է, թէ այն՝ վասն որոյ Քրիստոսն մեռաւ, և Յովհաննէս գլխատեցաւ, և միւս

Յովհաննէս աքսորեցաւ, և Յուսիկն բրածեծ չարչարեցաւ, և Ներսէս գեղատուութեամբ նահատակեցաւ: Օրէնք են Աստուած շաբաթանալ ոչ յամենայն իրէ, այլ 'ի ծանր գործոցն շաբաթանալ և հանգչել: Հրեայքն առաւել սիրէին զդատարկութիւնն, և զՔրիստոս վասն բժշկելոյն 'ի շաբաթն՝ օրինազանց ասէին. և նա զի գիտէր թէ ոչ է աստուածադիր օրէնքս այս, բժշկէր 'ի շաբաթն. և ոչ շահեցաւ զկամս նոցին, և յայլ օր փոխեաց. այլ զճշմարտութիւնն պատուեաց, և այս պատճառաւս 'ի նոցանէ խաչեցաւ՝ թէ զշաբաթս ոչ պահեաց: Արդ ընդէ՞ր ոչ զերծոյց զնոսա յաստուածասպանութենէն, և փոխեաց զբժըշկութիւնն յայլ օր. բայց զի չէր օրէնք՝ զօրէնքն յիւր չափն պահեաց. և զառաւելն խափանեաց: Իսկ ես ունելով զՔրիստոս վասն իմ օր ըստ օրէ առաջի Աստուծոյ Հօր պատարագ, խափանեմ զնորա բապասաւորեալն քահանայական Ծը

տուն քննողաց՝ որ քրիստոնէից ազգք բացատորին 'ի միմեանց իւիք իւիք. իսկ շնորհն Աստուծոյ զօրացոյց զիս՝ զայս մնոտի աւանդութիւննոցա՝ գիտութեամբ որհամարհել, և զսէրն նախապատուել. և է ինձ հայն որպէս զԼատինացին, և Լատինացին որպէս զՀելլենացին, և Հելլենացին որպէս զԵգիպտացին, և Եգիպտացին որպէս զԱսորին: Արդ եթէ ես միոյ ազգի ջատագով էի, ընդ այլսն ճիք էր կար հաղորդիլ. բայց ընդ իւրաքանչիւրսն որ միմեանց թշնամիք են՝ խառնիմ, և զքնաւսն շահիմ ըստ Քրիստոսի առաքելոյն: և ունիմ բան՝ որ ամենայն հարցողի կարող եմ պատասխանել թէ ուղիղ ընթանամ, և տիրոջն Քրիստոսի զամենայն կրճիմն քակեմ. որով բարեհաշտակիմ և 'ի Լատինացւոց եկեղեցիսն, և 'ի Հելլենացւոց, և յԱսորւոց, և կամ 'ի Հայաստանս. և ընդ տոսա անշարժ, և 'ի նոցին աւանդութիւնն անփոփոխ:

Արդ եթէ չարականներն, և զնախանձ իւրեանց առ մերձաւորս զայրացուցանէին, ընդէ՞ր ոչ մխիթարէին որ իմ հանճարս զհայաստանս՝ այս ազգացս հաճոյացոյց, և զնոսին միշտ առ մեզ 'ի սէր ձգէ. որպէս տեսանէք դուք և լսէք, որ աննախանձ ունիք զկամս: Բայց նախանձն 'ի Քրիստոսի լուսոյն նսեմացաւ, յիմոյս չէ զարմանք թէ խաւարի: Եւ յայս ոչ եմք օտար 'ի հարցն մերոց շաւղաց, այլ անստերիւր ընթացակից. զի ոչ եթէ 'ի Զորոյգեա, այլ առ մեզ են սուրբ հարցն բանք Գրիգորիսի Ակայաւորի, և որ յԵգիպտոս Նորին համանունն, և մերոց տերանցս. ունիմք գրով զնոցին հաւատոյ զդաշն, և ունիմք 'ի լոյս տեսողացն զնոցին վարուցն և ըղկարգացն ցոյցս. և երբ գամք յատենի՝ կարող եմք ցուցանել, որ մեք 'ի նոցին շաւղացն վերայ գընամք, և 'ի հաւատոց և 'ի կարգաց, և ո՛չ ուրք զմեզ նախատեն: Եւ ոչ եթէ զնոսա միայն ունիմք

Քրիստոս հրամայեաց թէ ծառն
'ի պտղոյն ճանաչի. մեր պտուղն
այս է 'ի մեծատոհմութիւնս, և 'ի
ձեր պատիւն և 'ի հայրենի ժա-
ռանգութիւնս. և զՄնեցւոյն պը-
տուղն դուք էք լսեր, և զՁորոյ-
գետոյն, և որ անդ Տուտէորդին և
Քաջաւորեցին, և այլքն խուժանց
անասունք: Զի Տուտէորդին յանդար-
դութենէ յաւուր եկեալ լեզուա-
դարձելոյն` փառաւս որսայ առ 'ի
մարզպանէ, և զփառս Աստուածոյ
ոչ գիտէ. ուտելով և ըմպելով ընդ
աշխարհականաց զպորտն պարա-
րէ, և զեկեղեցւոյ դուռն թէ ընդ
ուր է` բնաւ չգիտէ: Որ առ մեզ
ձգտի յուսուցանել, և զԹուղթս եղ-
բայրն իւր ոչ կամի և կամ թէ ոչ
գրէ` աշակերտել, և ոչ իւրում
տանն բարուք վերակացու գիտէ
լինել. որ յեկեղեցւոյ որբոց առաջ-
ձան անձամբ զանձն ընծայէ, և
յառաջինն բարձին իշխանահանու-
թեամբ բազմի: Իսկ Հաղբատա-
ցիք վարժքն` այնքան կուրացեալք
'ի միմեանց նախանձուէ, մինչ զի

'ի բան խօսելն միոյն և միւսոյն ունիչ առնելն՝ ամենայն վանականացն կատակականք են և ծաղր։ Ըզսեամս տաճարին Տեառն ոչ կոխեն իբրև զանարժանս, և զմեր սպասաւորելս՝ առանց Ճանաչելոյ երգիծանեն։ Սոցա ոչ կամեցաք ոչ խօսակից լինել գրով, և ոչ ընդունելութիւն ունել բանիւ. և ոչ նոցին կայր առ մեզ լեզուագարութիւն, և ոչ տուրևառութիւն 'ի տեառն մերոյ Գրիգորի աւուրսն, յորում նովին կարգաւս երևելի էաք ընաւիցն. և ևս առաւելապէս մինչև ձեր աստուածպաշտութիւնդ կոչեաց զմեզ 'ի մանուկ կաթողիկոսին ձեռնադրելն. յետ այնր արտաքս հանիք յաթոռոյն, և կոչեցիք 'ի քննել։ Հրաժարեցաք, մի և երկիցս և երիցս և չորիցս և հընգիցս զիր հրամանի ձեր զմեզ բռնադատեաց։ Եկաք, և զոր ինչ արարիք յայն ժողովին՝ համաձայնեցաք. գիտէաք և մեք զի մարդիկ էին մեռեալ 'ի Կղայն, և արծաթ էիք առեալ անտի և ոսկի. և չէաք

տկար լեզուաւ քան զնոսա, և ոչ ձեզ 'ի նոյն խորհրդակից՝ որպէս զոմանս. ունէաք և մարմնական ժառանգակցութիւն 'ի նոյնն. բայց խերև Աստուծոյ հրամանին՝ իշխանութեանդ հնազանդեցաք, և հաւատացաք Աստուծոյ՝ տալ քեզ իմաստ առ 'ի նոյն, գիտել զթերութիւն անձին. զոր և աղօթեցաք, և առաք զպտուղ աղօթիցն, ըստ որում և եսդ բարեսէր: Իսկ եթէ այնր աւուր խաժամուժն 'ի քո իշխանութենէդ զանգիտեցին, և ըզմեզ նպատակ նախատանաց փոխանակ քո արարին, և զամբոխեալ ոգիսն և զանափառսն ընդ ինքեանս շարժեցին, դու զնախատինս նախատչաց քոց յանձն առուս ընդ նոսին նախատես, և ճշմարտութիւնս մեր, զոր դու աչօք ես տեսեալ և վայելեալ, վասն նոցին զըրպարտելոյն երգիծանես: Հեռի արասցէ Աստուած 'ի քէն զՊիղատոսի զդատողութեան ճանապարհ. զի այսպէս էր նորայն՝ ոչ ունելով զդատաւորութիւն նախանձու, հրէիցն

որք 'ի Նորին քահանայապետու-
թիւնն իւրև զորդիսն Հեղեայ
ձեռներէց էին 'ի վերայ Քրիստոսի
հօտին, և ասէին. Տուր միս խորո-
վելոյ, ապա թէ ոչ՝ առնում բռնու-
նի. Տիգրանաւ՝ որ վասն իւր 'ի ծա-
ռայութենէն զերծանելոյ՝ Հայոց
ձայնակից գտան. և զքեզ աստուա-
ծասէր և աստուածահաստատ, և
զմեզ ընդ քեզ՝ յանդուգն բերա-
նովք զբարբառեցին հրեշտակու-
թեամբ միոյ մոնոզոնի, որոյ և ա-
նունն Աստուծոյ էր անգիտելի։
Դու իրաւացի ասես որ զնոցա
բանսն 'ի գիր ածես, կամ զմեզ զը-
զուես. աքք՝ որոց բերանքն անէ-
ծիւք և դառնութեամբ լի են, որ
զթոյնս իժից ունին 'ի ներքոյ շըր-
թանց, որոց երագ են ոտք հեղուլ
զարիւն, որք ըղձանապարհ խաղա-
ղութեան ոչ ծանեան և ոչ գոյ
երկիւղ առաջի աչաց Նոցա։ Զի
առանց ստութեան է այս վկայու-
թիւն Նոցին, իւրեանց գործերն ցու-
ցանեն, որք զքեզ յայն դատեցին՝
որ չէիր. և զմեզ նոյնպէս. ոչ թէ

ոչ դիտելով, այլ կամաւ զհուր զրպարտութեանն զգայնելով:

Արդ թէ քո աստուածպաշտութիւնդ արժանացոյց զնոսա պատասխանւոյ, մեր իմաստութիւնս ոչ բնաւ. զի խորամանկք ոչ տալ անդգամին պատասխանի. և զի յետին են նոքա որ յայս յանդգնին՝ բոլոր հարց, որք մերում ճշմարտութեանս ընդդիմակք են, նոյն իմքն մեր աշխարհս և սուրբ լեռանս, և որ՚ի սմա հովիւք սուրբք, և բոլոր գաւառն Վասպուրականի, և որ անդ հաշակաւոր ուխտն Վարագ, և երկելի այրքն Սանեփանոս Տիրացուն ուսուցիչն մեր, և Գէորգ ճգնաւորն, և Սանեփանոս՝ մեր ուսումնակից, և Քրիստոսատուր և Տիմոթէոս ճգնաւորք, որք ականատես լեալ են մեզ, և որ առ մեզ ճշմարտութեանս հաւանեալ, և երանեն թէ կարող էին ձայնակցել: Բոլոր գաւառն Տարօնոյ, և որ՚ի նմա իմաստուն եպիսկոպոսն Նայի, և վարժապետ Թէոդորոս, որ զմերս բարեհաշակեն բարեկար

գումթիւն, եւ երանեկն զՀաղոր-
դեալսն։ Գաւառան Եկեղեցւոյ, եւ
ընտանի սորայն Գրիգորի, եւ որ 'ի
նմա հայրքն եւ եպիսկոպոսքն՝ որք
զգօնք խորհրդոց բարեհամբաւեն
զմեր Ճշմարտութիւնս, եւ առաջին
վասն աղքատութեամբ եւ անօրի-
նաց բռնութեամբ 'ի սմանէ մեր-
ձանայք։ Իշխանքն Խաչենոյ, եւ որ
անդ վանօրայքն, որք զաշակերտան
մեր զՑօղնակ, եւ զկարգորդս մեր
վարժապետ՝ որպէս զՀրեշտակ
պատուեն, եւ կաթողիկոսութեանն
Աղուանից ընծայեն։ Եկեղեցիքն
Լասխնացւոց, որ առ յարեւելս,
եւ որք յարեւմուտս, որոց հաճոյա-
ցաւ մեր խնամատութիւնս՝ 'ի գնալն
ինքնակալին Հռովմայ ժողովով ե-
պիսկոպոսացն, որք առեալ զմեզ
հմուտ կարգաց խորհրդոց եւ մերոյս
լուսաւորչի, 'ի վերայ բարեգոր-
ծութեանն՝ փառաւորեցին զՀայր
որ յերկինս։ Եկեղեցիքն Անտիոքու,
Լասխնացւոցն եւ Հելլենացւոցն,
որք Պաւղոսի անուամբն զմեր
նուաստութիւնս բարեհամբաւեն,

և Նորին աԹոռոյն արժանաւորա_
տիւ լինել յաջորդ վկայեն, որոց
դրոշմեցին մեզ բաց են, և ժամանա_
կաւորքն աշակերտեալք : Գառա_
րխաւրզն Սաորուց՝ որոց գրերն առ
մեզ, և բարի վկայուԹիւնն մեր
աղքատուԹեանս մեծահաչակ : Ըն_
ծայեալն Թագաւորուեանն Կի_
պրոսի Գունդստաբլն, որ ՚ի գանձ
՚ի կարիս ձեր օգնականուԹեանն
առ մեզ, հաճուԹեամբ և գոհու_
Թեամբ ընկալաւ զմեր բարեկար_
գուԹիւնն : Գունդ Հեռի, որ Գա_
ղեստախնացուցն ընծայեալ է ար_
քայուԹեանն, զոր յայս ամ բե_
րեալ ձեր ՚ի Տարսոն, ակնզքն զայս
արար առ մեզ խօսելոյ, Թէ ոչ
ղջք գառայ այսօր բարի անուամբ
հաչակեալ առ բազումս, որպէս
դքո երկխուղածուԹիւնդ : Առաջին
կաԹողիկոսն տէրն եմ Գրիգոր
որ առ Քրիստոս փոխեցաւ, ՚ի
ժամ վախճանին զայս առաց, Թէ
հաստատահաւատեալ եմ դքո ճշմար_
տախօսուԹիւնդ մարդահաճոյ կա_
մօք, Նուիրողուեամբ Թող լինի :

Այժմու հայրապետս որ 'ի բնա-ւորութենէ և յիմաստութենէ ըն-թացակից լեալ մեր Ճշմարտու-թեանն, և նախատեսս վասն այսր ընդունի յօժարութեամբ: Ի վե-րայ այսր արտաքին վկայեցս ու-նիմք և զմտաց իմոց խիղճ, յոր հաստատեալ եմ թէ բարիոք միտս ունիմ, և յամենայնի կամիմ բար-ւոք գնալս ցուցանել:

Արդ զայս ամենայն որ 'ի Հայոց և յայլոց ազգաց՝ և 'ի մտաց խղճէ բարի վկայութիւն անտես առնեմ, և 'ի Զորոյգեա զերկուց արանց, որք իբրև զշունս լկտիս հաջեն՝ ըղ-կամս հաճեմ· որք վասն զԱնեցի արքեայն 'ի գուսանաց և յորո-վայնամոլութենէ յարբեցութենէ 'ի կաթուղիկոսութիւն քարշելոյ՝ զմեզ նախատեն, և նմա վկայու-թիւն տան, և մեզ այպանեն· մեք 'ի մերոյն մոլորիմք, թէպէտ և նոցա ոչ հաճոյ գտանիմք· զի նոցա կամացն լրումն Բարսղի կա-թողիկոսութիւնն է, և ոչ իմ 'ի Ճշմարտութենէ մոլորումն: Վասն

որոյ աղաչեմ զքո բարեպաշտու-
թիւնդ, զիս խորհել զօգուտ ոք և զա-
նուս յայս հարկ չիցէ։ Ես Աս-
տուածոյ կամօք 'ի Ճշմարիտ Ճանա-
պարհի եմ և մեծամեծ ուղղու-
թեանց՝ որք նախնեացեալ էին՝ նո-
րոգիչ 'ի Հայս. թէ ընդունիք՝ զոր
գիտեմ, և ձեզ վարդապետեմ, և
առաջնորդեմ ձեզ ընդ Ճանա-
պարհն՝ որ առ Աստուած տանի.
Իսկ եթէ անտես առնէք, և ոչ այն-
պէս լսեմ, և ասեմ առ Աստուած.
Տէր, դու գիտացեր, զի զարդարու-
թիւնս քո ոչ ծածկեցի 'ի սրտի ի-
մում. ասացի և ոչ թագուցի զնոյն
'ի ժողովրդենէ մեծէ՝ և նոքա շուրջ
պատեն զինև չարեօք, որոց ոչ գոյ
թիւ։ Եւ ամենայնին յօժարու-
թեամբք տանիմ, զի զՔրիստոս շա-
հեցայց, և գտայց 'ի նմա. և ըստ
այսմ յուսոյ գնամ խնդալով յե-
րեսաց ատենի քո վասն Քրիստոսի
անարգելեալ։ Իսկ եթէ ոչ հեռանիս
նոցա շատախօսութեանն և նախան-
ձուն, այլ պատուես զմեր որ յԱս-
տուածոյ պատգամաւորութիւնս,

ընտրեալ զՔրիստոսի հրամանին՝ որ աս-
ացէ. Որ ձեզ լուէ՝ ինձ լուէ, և որ զձեզ
ընդունի՝ զիս ընդունի. և որ զիս
ընդունի՝ զառաքիչն իմ ընդունի.
և ինքն Տէր մեր Յիսուս Քրիստոս
զօրացուսցէ զձեզ 'ի նոյնս, զի 'ի
ձեռն մեր լուիցես նմա. և առ չա-
րախօսն ասասցես. Ի բաց կացէք
յինէն անիծեալք, զի գործէք
զանօրէնութիւն. զի ինձ քաղցր
են բանք Տեառն քան զմեղր ու խո-
րիսխ, և ցանկալի քան զամենայն պա-
տուականս. զի պահեսցէ զնոյն՝
հաստատեցուցին առէք ընդ երկրաւոր
մեծութեանս և զմեծն կոչել յար-
քայութեանն երկնից. որում ժա-
ռանգաւոր արասցէ զձեզ Քրիս-
տոս 'ի փառս անուան իւրոյ, որ
է օրհնեալ յաւիտեանս. Ամէն:

Դարձեալ և զայս աւետարանդ ոչ
համարիմ յայտ առնել քում աս-
տուածպաշտութեանդ, զի ասէրն
զլուխ է ամենայն պատուիրանաց,
ասաց սուրբ առաքեալն Պաւղոս:
Եւ Տէրն նոր պատուիրան ետ մեզ,
զի սիրեսցուք զմիմեանս. և ոչ 'ի

նշանաց, և ոչ 'ի բժշկութեան սքանչելեաց եւս տարացոյց իւրոցն, այլ թէ Յայսմ ծանիցեն ամենե-քեան զձեզ իմ գոլ աշակերտս, և-թէ սիրիցէք զմիմեանս: Այսմ օ-րինացս գործօղք ոչ կարեմք լինել· և ընդ քրիստոնէից ժողովս միա-նօք կալ· և զՁորոյգետացեացն զմիտան հանձել: Այլ թէ և առնեմք 'ի նոցանէ, ոչ առնեմք զնոսա, այլ փարիմք սիրով և զհայաստա-նեօքս և զլատինացուոցն, զհել-լենացուոցն, և զամենեսեան մի գիտեմք 'ի Քրիստոս՝ Աբրահամու հաւատոցն զաւակ ըստ առաքելոյ· և կարող եմք շնորհիւ գիտութեան՝ զօր ունիմք 'ի սուրբ գիրս՝ ափիբե-րան առնել զհելլենացին, թէ զհայն խորշեալ կարծիցէ յուղղափառու-թէ, և զհայն՝ թէ զայլ ազգ· և զի աղբիւր և հիմն հաւատոցս Քրիս-տոսի նոքա եղեն, և մեք նոցա ծնունդք որպէս ասի յերգ մի՝ որ առ մեզ եղանակի· Կեցո զորդի ծառայի քո, զոր 'ի Հռովմայ գա-հիցն վերապատուեցեր, ուր եդին

դմէջն հաւատոյ հիմանն սուրբ ե-
կեղեցւոյ։ Արդ Հայոց վարդապե-
տին բանքն՝ հիմն զնոսա. ասէ, և
զմեզ 'ի վերայ նոցին շինեալ. և 'ի
նոցին բարբառն ունիմք բազում
բանս 'ի գիրս սուրբս՝ որք չեն շըր-
ջեալ 'ի հայ լեզուս. այլ 'ի պա-
տիւ նոցին հեղինակէն թողեալ
են, որպէս Քրիստոսն՝ որ թարգմա-
նի 'ի հայս օծեալ. եկեղեցին՝ որ
թարգմանի ժողովարան. կաթու-
ղիկոսն՝ որ թարգմանի ընդհանրա-
կան. եպիսկոպոսն՝ որ թարգմանի
այցելու. Ստեփանոսն, Լէոնն,
Գրիգորն, պռոսխումէն, որթին, և
այլք բիւր։ Եւ զի այս այսպէս է,
կաթուղիկէ եկեղեցւոյ սովորու-
թիւն է որ 'ի մեծամեծ տօնսն՝ 'ի
Կոստանդնուպօլսի եկեղեցին՝ զա-
ւետարանն նախ 'ի լատին լեզու
կարդան, և ապա յունարենաց. և 'ի
Հռովմայ եկեղեցին, և յԱնտիո-
քուն և յԵրուսաղէմին՝ նախ 'ի
հեղինացի կարդան, և ապա 'ի լա-
տինացին. և այսպէս զմիմեանս տի-
րով պատուեն։ Տարանի կաթու-

զնկէ եկեղեցին՝ եկեղեցի է իբրև զմի 'ի նոցանէ. և դու թագաւոր մեր՝ որպէս նոցայն իւրեանց. և ժողովոյն մեծ բաժինն հելլենացիք էին, և քահանայքն որ յողոգոմեան օրն՝ մեզ աղօթակցէին. և ցուցաւ 'ի վերոյ որ չէ առ մեզ հելլենացի լեզուաւ խօսելու, այլ պատուելու։ Թէ ես հարցի թէ ընթեռնուն 'ի նոցա բարբառն աւետարան, և ապա մեք՝ չանօրինեցաք. այլ զկաթուղիկէ եկեղեցւոյն օրէնքն պատուեցի. և այն ոչ քո պատուոյդ փոքրկութիւն էր, այլ բարձրութիւն, որպէս այդ թագաւորացդ, որ 'ի նախայիշատակեալ եկեղեցիսդ պատահեն. և ձեզ պարտ էր զեկեղեցւոյ օրէնքն յիս՝ որ իշխանն էի եկեղեցւոյն՝ թողուլ, և հնազանդութեամբ լըսել. և ապա բարեմիտ կամօք ըղպատճառն քննել։ Նահանջեցիք զիմն, և ես հաւանութեամբ պատուեցի զձեր հրամանն, ոչ իբրև զօգէտ, այլ իբրև զիշխանութեան հնազանդ։ Արդ այս հելլենացւոց

սախտս լատինս լեհյալ. տուաք պա-
տիւ անուանց՝ ամիրայ և հեծուայ
և մարզպան և սպայասալար, և
այսպիսիս. և մի՛ սէր և պղծաբա-
մաս, գուշակութեամբ և մարզա-
ջախտ և ձիաւոր և լեծ, որ Լա-
տինացւոց է օրէն: Արդ փոխեցէք
դուք զայս լատինացի ձևս, և զա-
նուանն 'ի Պարսիցն և 'ի Հայոցն
ձևս և անուանս, ըստ ձեր հարցն.
և բարեզարդեցէք զձեր արքու-
նիսդ՝ տաւաճնոցն սովորութեամբն.
և մեք հաւանիմք Զորոյգեա-
ցեացն, և փոխեմք զմերս, և կա-
տարեմք զպատարագն տաքսուլա-
յով, և երկու կանգուն վեղարով.
ծրարեմք զմետաքսեայ զգեստն, և
մտանեմք առաջի Աստուծոյ զգես-
տով և կրօնաւորութեան պճեմով.
լինիմք խարազնազգեստ 'ի պատա-
րագին՝ որպէս նոքա կամին, և ոչ
քթանազգեստ՝ որպէս Աստուած
հրամայեաց առնել Ահարոնի և
որդւոց նորա պատմուճանս կը-
տաւեայս պճղնաւորս, զոր նոքա
ոգիտութեամբ յաչաղեն: Լինիմք

հրապարակաւ մատնէր և Թուր-
քացն կեղծ պայմաններ, զինչ խարեանք
են և խարդեանց ընտրեալն Անեցին.
խաԹելք զանձկականաց աղաղաքանով,
և հաճոյականաւք հանդամանակցացն՝
որոգէա նոայն տանէ։

Իսկ առաջս Թէ իշխանուԹեանդ
ձեր ծաներ է այսօր՝ զլառնին այգին,
որ են Փռանկք, անոր և բարակ
սուտերուԹիւնն Թողուլ, և 'ի հնոց
հայրապետանաց ԹանձրուԹիւնն
զառանեալ. և ոչ հերո ժողովէք, և
ոչ մարուա երկայնացուցանէք, և
ոչ զգեստս ըոյնացուցանէք, և մեզ
եւ ծանրագոյն զկառավարել բա-
րեկարգուԹիւնն՝ որ 'ի նոցանէ օգ-
տեցաւք 'ի փառս սուրբ եկեղեցւոյ,
արհամարհել վասն Զօրոյգեայ
երկոսա աղաւէտուցն համձուԹեան։
Զի զառաք զհայոց եկեղեցիս ա-
ռանց քահանայական զգեստուց,
և 'ի նոցանէ օգնեալ՝ զհինն սովո-
րուԹիւն նորոգեցաք. զառաք՝ զի
զերրորդ և զվեցերորդ և զիննե-
րորդ ժամն 'ի միասին կատարէին.
և 'ի նոցանէ զօրացեալ՝ զիւրա-

քանչքուրան յիւր ժամին կատա-
րեմք, և եօթն անգամ յաւուրն
զԱստուած օրհնեմք: Գտաք՝ զի
պակասեալ էր 'ի վանորէիցս խա-
ղաղական աղօթքն, և առ Նոսա
անեալ հաստատեցաք, Նախ ժո-
ղովել յեկեղեցին յաղօթս, և ա-
պա 'ի մանկինս հանգչել: Գտաք՝
զի չունէին օրհնութիւն կրօնաւո-
րաց. այլ քահանայացուցեալ՝
միայն զձեռն առին. զոր անեալ
առ Նոսա՝ Նախ օրհնեմք կրօնա-
ւոր, և ապա սարկաւագ, և քա-
հանայ կատարեմք ըստ Նոցա: Գը-
տաք՝ զի սահմանով ունէին զողոր-
մութիւն առ աղքատս, և ոչ ըստ
պատահման միայն. զնոյն բարուք
Նախանձն բերեալ 'ի մեզ յողոր-
մութենէ ձեռնէ՝ որ 'ի Տարսոնի
եկեղեցին, սահմանեալ եմք յաւր-
բաթի և 'ի չորեքշաբաթի եր-
կերիւր և երեք հարիւր աղքա-
տաց հաց և բանկլայ բաշխել. և
թէ նա տայ Աստուած և ձեր բա-
րի կամքն՝ նա աճեցուցանեմք:
Գտաք՝ որ ղէկես ամին միանգամ

յաւուրն ուսեն կրօնաւորքն, ըզ-նոյն և մեք օրինադրեսցուք :

Արդ զայս բարի սովորութիւն՝ վասն Տուատէորդւոյն հաճութեան, արհամարհեմք, և լինիմք աղիղծ որպէս զինքն, որ ինքն հանդչի, կամ տգէտ՝ որպէս նայն է, որոյ իմաստն 'ի գրոյն և 'ի բանէն իւրմէ ճանաչի. որ երբ զբուն յետնոյն յիմ ձեռաստուն աշակերտացս չէ :

Իսկ եթէ յետ այսր վասն տօնի աստուածայայտնութեանն զատել զմեզ ժպրհին բերելով 'ի հայոց գրոց վկայս, չեմք և ոչ այսոցիկ պատասխանատուութեանն անվարժ, այլ կարի տեղեակ. բայց զձեզ ոչ կամիմ յաճախութեամբ գրոյս ձանձրացուցանել : Այլ զոսոխն՝ 'ի յառնելն աւարկու՝ աստուածայինն ճշմարտութեամբն ենթադրեմ 'ի նոյն գրեանցն, և 'ի հարցն բանից որք 'ի Հայս պատուէին : Նոյն և զերրորդ ամուսնութեան հրաման՝ որով զիջաք առ ժամանակիս ծննդոց տկարու-

չաղէ. Թող զան 'ի հանդիսի տե-
ղիս, տառն վէր և տառանուան. և որ
յաղթող լինի Քրիստոսի Ճշմար-
տութեամբն՝ զզգաստութիւնն ընկալ-
ցի: Նոքա ինձ երկու երեք թուղթ
են գրեալ նախատինք. ես գիրք մի
բովանդակ եմ գրեալ զՀայոց ազ-
գիս անկարգութիւնս՝ որ յետոյ
մնեալ են. համեմատեալք իրերաց,
թէ՞ զօրանայ առ Ճշմարտու-
թիւնն և 'ի գրոց ձայնակցու-
թիւնն, իմն՝ թէ նոցայն: Ապա
թէ անդ չառաջէք, և 'ի հանդիսի
տեղս զնոսա չկոչէք, թո՛յլ տուք և
մեզ՝ մեր բարեկարգութեամբս մը-
նալ առաջի Աստուծոյ, և տանիմք
զնոցա բամբասանսն և զշատախօսու-
թիւնսն՝ որպէս զմանկանց շաղակ-
րատութիւն. 'ի վերայ որոց և ա-
ղօթեմք՝ Աստուծոյ շնորհօքն գալ
յուղղութիւն: Եւ թէ դուք խոր-
հեք զՆիկոդիմոսեան՝ զգիշերայինն աս-
տուածապաշտին, կամ զայնն՝ իշ-
խանացն՝ որ 'ի Քրիստոս հաւա-
տացին և ոչ յայտնեցին, զի մի 'ի
ժողովրդենէն ելանիցեն, սիրելով

զփառս մարդկան քան զԱստուծոյն, աղօթեմք Աստուծոյ ներողութեամբ ընդունել և տալ ձեզ ժամանակ յառաջանալոյ շնորհի, զի և առ ձեզ լուսաւորեսցի ճըշմարտութիւնն, և ձեզ յամենայն նենգեցէք սրբոց· զորս յուղղութեանն և 'ի ճշմարտութեանն դաստիարակելոյ վարձս ընկալջիք ընդ բարեպաշտ թագաւորացն Դաւթի և Յովսեայ, Կոստանդիանոսի և Տրդատայ, որ յիւրաքանչիւր ժամանակս ուղղիչք եղեն աստուածպաշտութեանն, և ժողովրդեանն՝ որք ընդ նոքօք՝ ուսուցիչք· զորոց գործսն որ 'ի գիրս սուրբս ժողովեալ են, պատմութիւն առեալ քո բարեպաշտութեանդ՝ ընթերցողացն ունկնդրութեամբ նախանձիս զբարի նախանձն. և հանելով զպատուականն յանարգէն՝ բերան Աստուծոյ կոչեսցիս: Զասացեալ լսելով զգործսն՝ իմանաս, զի ոչ եղեն աւանդապահք այլ օրինապահք՝ որպէս Յովսիա, որ զօրէնս եգիտ թագուցեալ և զա-

ւանդութիւնն զօրացեալ. և սա
զօրէնսն, պատուիրեաց զպատուիրու-
ձանն վասն անարգութեանն, և
հաստատեաց զնոյն 'ի մէջ Իսրայէ-
լի, և ընդ երանելեացն յիշատակի:
Յայս զօրացուցէ Աստուած զձեզ
կանգնել զօրէնսն Աստուծոյ 'ի մէջ
պանդուխտ և նժդեհ ժողովրդեան ձե-
րոյ և ազգիս, և Աստուծոյ փառ-
թաւ հաճոյ լինել, և մի՛ մոռացկան.
որ և ընկալջիք զձեզ հանդերձ փա-
ռաց իւրոց ընդ ամենայն սուրբսն
'ի յաւիտենական կեանսն. և նմա
փառք յաւիտեանս. Ամէն:

# ՆՈՐԻՆ

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՆԵՐՍԵՍԻ

## ՏԱՐՍՈՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՍԱՑԵԱԼ

**Բարեբանութիւն ներբողական գովութեամբ 'ի Համբարձման Տեառն Յիսուսի Քրիստոսի յերկինս:**

ՑՆԾԱ *այսօր հարսն ողջախոհ եկեղեցի հեթանոսաց 'ի պատիւ յիշատակի փեսային քո Քրիստոսի խորհրդոց: Պարեցէք, ով մանկունք առագաստանի, այսօր ուրախութեամբ, զի հաստատեցաւ սիրտ ձեր 'ի հանդէս փառաց նորա մեծութեան: Զուարճացեալ խրախոյս խնդութեան հարկէք 'ի մէջ տաճարիս, դասապետք դասուց հանդի-*

ան ժողովըյս: Քանզի ահա այսօր լրումն փափագմանց ձերոց յերկինս երկնից կատարեցաւ ամբացաւ: Ո՛վ արեամբ փրկեալ անբիծ գառինն՝ սեպհական ժողովուրդք Քրիստոսի. դուք՝ որ ընդ խաչեալն՝ խաչեցայք յօժարութեամբ, և ընդ թաղեալն մեռայք անձկութեամբ, և յարութեանն հաղորդ եղէք դաւանութեամբ, այսօր եկայք բարձրացէք սլացեալ ընդ նմին թևօք հաւատոց 'ի փառս երկնաւորս, յոր մտեալ նստաւ ընդ աջմէ Հօր, առհաւատչեայ և Ճանապարհ ամենեցուն ձեզ:

Այլ ինձ, որ զառաքելութիւնս ընթագրեալ՝ պաշտօնական կացի աւուրս մեծի, ո՛վ տայր հաւասարել խորհրդոյս, և զամենեսեան զձեզ մխրացուցանել խանդաղատութեամբ տօնելոյս: Այն զի վերջացայք 'ի սահեցմանէ խրաց կենցաղոյս՝ նայել 'ի պճանչելի փառս այսր աւուր, յոր հրեշտակք ժողովեալ հպատակեցին, և յեկեղեցի՝ ուսեալք բազմապատիկ ի-

մասանս Աստուծոյ՝ ժողովրդս մեր երգակցին։ Նա և առաքեալքն սուրբքն 'ի սպասաւորել խորհրդոյս՝ ապշուցեալք սքանչացան. և մարգարէքն 'ի բացուստ տեսեալ՝ հրամանն ետուն ժողովրդս երգոց օրհնութեան։ Համբարձաւ, ասէ Դաւիթ, Աստուած օրհնութեամբ, և Տէր մեր ձայնիւ փողոյ։ Ո՛վ դուք եկեղեցւոյ մանկունք, բարձեալ զձայնս քաղցր եղանակաւ՝ սաղմոս ասացէք Աստուծոյ մերում, սաղմոս ասացէք Թագաւորին մերոյ, սաղմոս ասացէք։

Այլ աւա՜ղ, զի հեզգութիւն մեր ծանրացեալ 'ի զբաղմանէ մարմնոյ՝ հաւանել հրամանիս վերջացաւ. և զճաշակ համեղ զխոստութեանս՝ ջամբել անձին երգօք օրհնութեամբ՝ յուլացաւ։ Քանզի որպէս մարմնոյ. ոչ է մի՝ տեսանելն զպատգեցուցիչ իւր համագամն՝ և ճաշակելն, այսպէս ոչ է հաւատալ լսել զբանս Աստուծոյ, և ոչ խուզողական հանճարովն որոնել. զի այսու պարարեալ բերկրի, և

այնու երբէք ոչ մխիթարի։ Յաս-
զագս այսր Նախախնամողն Աս-
տուած որպէս մարմնոյ եւ զա-
նազան որակս պտղոց եւ երանգա-
կերակրոց, որ բաւական էր մինն
առ 'ի կեանս, զի յիւրաքանչիւ-
րոցն առանձինն ձգեսցէ համեղու-
թիւն երանգոյ եւ հոտոյ եւ
զուարճասցի, այսպէս եւ հոգւոյ
եւ տալով քան զնոյն կերակուր՝
զզանազան տօնս տաղաւարայինս,
իւրաքանչիւրոցն խորհրդոցն ո-
րակք գունով՝ եւ անուշահոտ բուր-
մամբ առանձինն։ Զի 'ի Ծնա-
չեղն զնոտա՝ անյագ լինի փառաքա-
մամբ խորհրդոյն, 'ի զուարճացու-
ցանել զիմաստս մտացն քնոց։
Վասն որոյ եւ դուք, որդիք Եկեղեցւոյ,
որոց եւ Աստուած զամենայն
ծառս գեղեցիկ 'ի տնկանել, եւ
քաղցր 'ի կերակուր, եկայք կլթեա-
ցուք այսօր 'ի ծառոյն կենաց
Քրիստոսէ՝ զպտուղ գեղեցիկ նո-
րին համբարձման, եւ բերկրեալ
ցնծասցուք 'ի վերայ գեղոյ նորա
վայելչութեան, անմահական հա-

մոյն քաղցրութեան, և հաստոյն բերկրութեան ։ Որպէս զի որք բնաւորք ընդ 'նմին խոցեցաք և 'ի գերեզման մտեալ երկնեցաք, և զհորհուրդ յարութեանն 'ի գողութիւն համբաւեալն լուեալ վկայեցաք, այսօր տեսեալ զնոյն ինքն յերկնից ճանապարհն ինքնիշխանութեամբ ընթացեալ, հաստատեալ սրտիւ պարեսցուք, և բարձրաբազուկ 'ի վերայ թշնամեաց մեր ճախրեսցուք ։

Ո՞ւր ես անզգեղջդ 'ի չարիս բանսարկու. ո՞ւր դու զբաղարանեչ դատախազ. ե՞կ այժմ կաց մեզ ատենթեր, ոչ իբր զսիրելի, այլ իբրև զթշնամի ։ Տե՛ս և ողբա՛ յանձին քո. տե՛ս և յամօթ լեր 'ի գործս քո. տե՛ս. սա այն է՝ որում զխաչն մեքենայեցեր, որում զլեղին արբուցեր, զոր զողացեալ համբաւեցեր. ահա անկեալ յանդգիման քեզ և ամենեցուն՝ որպէս զհզօր և զկարող յերկինս համբառնայ ։ Ցայնժամ մեզ էր տրտմութիւն, այսօր 'ի վերայ քո ցաւք և երբ բազմաս-

ցէ։ Ցայնժամ 'ի ցնծութեան մեր մահն՝
ընդ մեզ և տարերքս սուրբ զգե-
ցան. այսօր 'ի համբառնալն նորա՝
և օդ և երկիր պայծառացեալ՝ չըք-
նաղ ցնծութեամբ ընդդունին զնա.
և պարք լուսաւորացդ խոնար-
հեալք աստիճանք լերինն ստեղծո-
ղին իւրեանց, որ փոփոխեալ ըղ-
դարշապարս անցանէ վերոյ նոցա
'ի յերկինս։ Ցամօթ եղեր հրա-
պուրող մարդկան 'ի սէր աշխար-
հի. զի անկներն պշուցեալ զգրա-
ւականն մեր՝ յղարկեալք օրհնու-
թեամբ 'ի յերկինս, և 'ի վերայ
նորա ամբառնամք։ Ոչ ևս այսու-
հետև գերութեանս դուռ խշխեա.
զի զերբեղարձն զմեզ յերկնից քա-
ղաքն ածեալ ամբարցոյց։ Տկարա-
ցար անհաւատութեան տառամեք
զմարդիկ պատրել. զի առ հաւատա-
չեալ հաւատոց մերոց 'ի ծոցն Հօր
Աստուծոյ ելեալ բազմեցաւ։ Ոչ
ներգործէ այլ՝ դարանակալեօք մե-
քենայք զյուսահատութիւն. վասն
զի բարեխօսն մեր ընդ աջմէ Հօր
նստեալ քաւէ զժողովուրդս։ Ոչ

կարես 'ի չարախօսելն այլ զլանալ զերաստանս . զի որ զփորձն էառ քո հնարիցդ, է փորձեցելոցս օգնականն ։ Սորվացէր գոնէ անսասան 'ի չարեացդ, քանզի արտաքս ձգեցար յիշխանութենէ աշխարհի ։ Տես, մարմին և արիւն է՝ որ յերկինս ելեալ բազմեցաւ . և ա՛ռ իշխանութիւն յերկինս և յերկրի ։ Այլ գիտեմք զի ամօթով թագչիս . գիտեմք զի մերկ խայտառակ եղեալ յիշխանութենէդ նշաւակիս . գիտեմք զի նկուն եղև լեզուդ, որ զսքանչելիսն բեհեղգերուզաւ ասել սոտխալէր, և զվարդապետութիւնն՝ հակառակ Աստուծոյ կարծեցուցանէիր, և զպարութիւնն՝ զօղութիւն հրատարակէիր ։ Վասն զի այսօր այն գործոյ կատարիչ՝ ոչ միայն յերկնից տայ նշան, այլ ինքն ընդ երկինս թեւթև սլացեալ, մարմնով համբարձեալ, հրեշտակաց զօրօք յղարկեալ, ընդ աջմէ Հօր նստեալ, նշան լինի հաւատոց և զօրութիւն՝ կոխել զքո խայթոցս ։ Դիտես, և զդատակնիք

երեւեցուցանէր նմա վասն առաքինի արարչութեանն, որում անմարթ է հետեւել նախահայեաց բնութեանն. եւ զի՞արդ զօր 'ի բարի ստեղծեաց բարւոյ արարիչն՝ ունէր յայլ ինչ փոխել, բայց թէ զխանդ ախտիցն, ընդ որ յեայ թաւալեցաւ՝ մերքրել։ Եւ զի անհնար եղեւ այս այլ ումեք, ասէ առաքելոյն. Աստուած զորդին իւր առաքեաց 'ի նմանութիւն մարմնոյ մեղաց, եւ վասն մեղաց։ Առ 'ի զի՞նչ կատարել գործ. որպէս զի մարմինն զգեցցի, եւ ըստ իւրում էութեանն՝ անմեղ զնա ցուցեալ զմեղս կտրեսցէ, եւ զհայր մեղացն դատապարտեսցէ անմեղ մարմնովն, ամենայն մարմնաւորացս մեղաց պարտական. եւ զակամայ զերեալքս 'ի նմանէ զերծուցեալ յառաջին հայրենեաւն վերստին փոխեսցէ։

Այսպէս բարեկամքս ծանեաք զխորհուրդ Տեառն մերոյ, զեր 'ի վերոյ քան զծառայական օրինացն վարժեալն։ Վասն այսորիկ զա-

զի որոց շրջիմք 'ի մէջ օձից և կար-
ճաց, և մահացու թունիւքն խո-
ցիմք, լիցի արեամբն իւրով սըր-
բիչ, և մեծի շնորհաց Հոգւոյն ըն-
ձեռիչ :

Յաղագս որոյ 'ի դէպ ժամանա-
կի առաքեալ ընդ իւր զգումնդս աշա-
կերտացն, եւ'ի լեառն ձիթենեաց:
Ի վայրին՝ ուր ուսան զձայնս նորին
թշնամեաց, և ուր լուան զբանս
չարչարանացն և երկեան, ծանու-
ցեալ զփառաւոր համբարձումն
բերկրեցան : Ի լեառն՝ ուր տեսին
զնա յաղօթս տարակուսանօք, ան-
տի տեսին զնա սլացեալ ընդ ամպս
լուսեղէնս փառօք : Ի տեղւոջն՝ ուր
խոնարհ եդ յերկիր զաստուածայ-
ին երեսն արտասուօք, անտի վեր-
համբարձաւ հրեշտակացն օրհնու-
թեամբ և փառօք : Ի պարտիզէն՝
ուր կապեցան նախատանօք, ան-
տի սաւառնեալ շքեղացեալ՝ ճանա-
պարհ առնէր ընդ ամպս գարշա-
պարօք : Ի ձորն՝ ուստի փախեան
'ի նմանէ առաքեալքն վշտօք, ան-
դանօր ժողովեալ օրհնեցան յա-

մենօրհնեալ աջոյն պանծանօք ։ Ի ձիթաստանիս տրտմեալ՝ ոչ կարէին տանել զձայն մահուն զարհուրանօք. անդ երեաց զմիտս նոցա իմանալ զցիրս, զոր ելից հրաշալի իւր գործովք ։ Ի կեդրոնեան ձորոյն՝ ուստի տարան զնա՝ ի խաչ սոսկերօք, ՚ի նմանէ ամբարձաւ ՚ի կառս քերովբէից նուրբ հողմոյն Թևօք ։

Մայրն՝ ուր խոցեցաւ յայնժամ ՚ի նախատանաց սայրասուր սլաքօք, այժմ տեսանէ զորդին իւր Թագաւոր պճնեալ պսակօք ։ Մարիամ որ ժողովեալ զամենայն բանս՝ խելամուտ լինէր ՚ի սրտին խորհրդովք, եւս այսօր զելս ամենայն տարակուսանաց իւրոց լուծմամբ ։ Մեծութեն՝ որում ակն ունէր որդւոյն հաւատովք, եւ անկնարկող այսօր զգալի իւր աչօք ։ Զթագաւորութիւնն՝ զոր խոստացաւ նմա հրեշտակն աւետեօք, նայեցաւ ճշմարիտ՝ ՚ի նմանէ անդրանկին յաթոռ բարձրելոյ հօրն փառօք ։ Վասն այսորիկ

ցնծայր, հրճուէր, և այսպիսի ինչ 'ի բարձրաձայնն որդւոյն զկնի բարբառ արձակէր. Այսօր սիրտ իմ հաստատեցաւ, և բերան իմ յարձակեցաւ 'ի վերայ թշնամեաց, ով անդրանիկդ իմ և Տէր, որ կափուցեալ տառապանէր 'ի քո յանձնան խոնարհութենէ: Այսօր բարձրացուցեր զգլուխ մօր քո փառօք, որդի իմ և Աստուած, որ լռութեամբ կորանայր 'ի բամբասելն զկուսութիւն իմ յաւլթի բժժանօք: Այսօր պայծառացուցեր զդէմս իմ՝ նշուլից հեռաց ոտինդ ճառագայթիւք, որ 'ի ժամ չարչարանաց քոց զգեցաւ սուգ՝ մթին տառապանօք: Այսօր լցեր ըղկանխասացաց բանս ազախնոյ քոյ սքանչելեօք, զի ահա յայսմ հետէ տան երանիս ինձ ամենայն ազգք լեռլ բերանովք: Այսօր շնորհ ունիմ Գաբրիէլի ողջունին՝ զոր ետ աւետեօք. զի տեսանեմ զքեզ 'ի հրեղէն Նորա դասուցն պաշտեցեալ երգովք:

Զայսպիսի մայրն Աստուծոյ

զմիտ եւեթ որդւոյն հնչելով, զաւա-
նդոյր առաջս 'ի դասս առաքելոցն
հաղորդս կոչելով 'ի ցնծութիւն
արտաքին զնոսա։ Ո՛վ Պետրէ, ընդէր
լռես. ահա հրեշտակք ակնածեն ա-
ռնել եղանակին շուրջ զմարդա-
պետական քո զօրհնութիւնս. մա-
ղջունդս քո, և խառնեսցես 'ի սպասս
նոցա, երգակցես, տալով օրհ-
նութիւն այնմ՝ որ օրհնեաց զեր-
կիր զալստեամբ իւրով, և պայ-
ծառացոյց զերկինս ընծայիւք իւ-
րովք։ Թագաւոր մեծ 'ի վերայ ա-
մենայն երկրի ակնարկեամբ զվերա-
ցեալն 'ի յերկրէ զԱստուած. շառ-
ժեցէք զլեզուս ընդ բանական զը-
ւարթնոցն զօրաց՝ սաղմոսելով
նմա զովութիւն։ Դաւիթ այժմ
զԱստուած տեսեալ համբար-
ձեալ օրհնութեամբ, և զՏէր ձեր
ձայնիւ փողոյ հրեշտակաց, խրա-
խոյս տայ ձեզ սաղմոսել նմա
քաղցրաձայն. և ահա անփոյթ ա-
րարեալ հրամանին՝ պակուցեալ
աշուցեալ ընդ զնացմնայկս։ Օգգ
ահա արտաքսայլէ 'ի փառաց նո-

րա, և երկիւղ խոնարհէր ընդ ո-տիւք նորա, և բարբառականք նորին բանական զգլուխս մակց նորա. զուք մինչև ցոր վայր ապշուցեալ կամիք տեսանել զընթացս նորա:

Այլ նոքա ապշուցեալ հայէին ընդ երկինս երթալոյ նորա, սքան-չելի իմն հիացմամբ սոսկացեալք ՚ի յանձինս: Զի թէպէտ և տե-սողք եղեն սքանչելեացն՝ խորհրդ-ականք յարութեանն, սակայն տեսչութիւն կամացն ծածկեալ զորքանութին փառաց իւր ՚ի նո-ցանէ, առ ՚ի համարձակ ընդ իւրև շքել: Քանզի այն Պետրոս՝ որ զաւանեաց զնա որդի Աստուծոյ, և եստես զհաւատս զաւանութեանն ՚ի Թաբոր, սասանեցաւ ՚ի չարչա-րանսն, և շաղփաղփ բանս կար-ծեաց զաւետիս յարութեանն. և յորոնեցին զնոկ կառաւսն մնացեալ՝ զօղացեալ ճշմարտեալն հաւա-տաց, առ ՚ի յոչ զիտելոյ զգլորց զօ-րութիւն: Այլ և յետ տեսանե-լոյ զնա յարուցեալ, և շօշափելոյ ձեռամբք Թովմայի, զի՞նչ. զուա-

կամաւն առեալ՝ զօրձեալ 'ի գործ որսոյ ձկանցն ընթացս. մոռացեալ զասացեալն՝ թէ այսուհետև զմարդիկ 'ի կեանս որսայցես: Արոց առընթեր կացեալ՝ մանկունս Տէրն առաջնորդէր. Մանկունք, միթէ ունիք ինչ ուտելոյ. և ապա առնեալ զսքանչելի պատուէր վաստակոյն, եկին և ճաշեցին 'ի միասին, գիտելով զի Տէրն է. և ոչ իշխեին հարցանել զի մի որպէս առ Կղեոպեանն՝ աներևութասցի փափաքելին 'ի միջոյ: Եւ այս ո՞րպէս. – զաւուրս քառասուն բազում նշանօք՝ որ ոչ գրեցաւ՝ զասատանելակեաց զինքն. և առեալ 'ի Գալիլեայ առ յԵրուսաղէմ և ասաց. Այս բանք են զոր խօսեցայ ընդ ձեզ նախ քան զչարչարանսն, թէ պարտ է լնուլ զգրելոցն յօրէնսն Մովսեսի և 'ի մարգարէս և 'ի սաղմոսն վասն իմ. և բացեալ զմիտս նոցա իմանալ զգիրս:

Իսկ յայնժամ որպէս 'ի քնոյ զարթուցեալ դասք առաքելոցն տարբաժեալ ունելով առաջին իմա-

զի ամենա ցանկալին. և մեք, եղբարքս, 'ի փափագանս նոցին վայելեմք: Եւ զայս խանդաղատեալ սրտիւ ընդ միմեանս 'ի Ճանապարհին, հասանին մերձ 'ի Բեթանիա:

Յայնժամ համբարձեալ զձեռս իւր օրհնեաց զնոսա, և անդէն փութապէս մեկնեալ՝ սկսաւ վերանալ յերկինս: Իսկ նոքա սրտաթափ յուսահատուր խոնարհեալ, զերկիր համբուրեալ՝ շնորհ ունելով օրհնութեանն, յարուցեալ փութապէս և երագ աչուցեալ նայէին ընդ երկինս 'ի յերթալն նորա: Եւ ձայնէին առ միմեանս. Զի՞նչ էր պատահումնս. ո՞րպէս ընդ Ճանաչելն զՃշմարտութիւն և անձանօթացաք. ո՞րպէս ընդ յայտնելն զօրապետութիւն փառաց իւրոց՝ դառնաւ փափագելին 'ի մէնջ թաքուցեալ. զիա՞րդ յորժամ սկիզբն ամրարապ զգուշութեամբ պաշտեալքս, դառնաւ պաշտեցեալ վարդապետն 'ի մէնջ՝ վերացեալ: Իբրև զմեզ որ համարեալ է մեզ ժամանակին, յորս ողխոսութեամբ շըր-

Թեւամբքն փոխէր։ Թէ այլ ոք ձըկտեալ կորովի բրօք զչուել նորա նշմարէր, ամենեցուն աչք ընդ նմին յուսով ուղերձէր։ Քաղցր էր նոցա աշնուն ընդ երկինս ընդ երկար ժամանակ, թէ ոչ ամպն 'ի ստորև մնացեալ զգեր 'ի վերոյ ելեալն ծածկէր։

Այլ զի այս եղև փութապէս, և էր աշխատութիւն նոցա 'ի պշնուլն ընդ երկինս մեծապէս, եկին հրեշտակքն բարեկամք՝ կրկին երևմանն յուսով սփոփել զմիտս նոցա. և յաշխատութենէն ընդ երկինս հայելոյն դադարեցուցանել։ Արք գալիլեացիք, այժմ զի՞ կայք հայեցեալ ընդ երկինս՝ անջրպետութե ամպոյդ որոշեալք 'ի տերեւոյն. այս Յիսուս որ վերացաւ 'ի ձէնջ՝ սոյնպէս դարձեալ եկեսցէ։ Արդ դարձիք սպասեցէք սորա կրկին գալստեանն, զի հանդերձեալ էք վերստին տեսանել զսա եկեալ փառօք, որպէս և այժմ համբարձեալ։ Պատասխանեցին. Եւ զինչ լիցուք աշա-

զերեզմանացն Թաղեցեալ ամպօք ընդ առաւօտ ընթանայք։ Արք գալիլեացիք, զի՞ կայք հայեցեալ ընդ երկինս •. համբառնալս Յիսուսի զոր տեսանէք՝ ոչ է ըստ աստուածային փառացն, այլ ըստ մարդկային խոնարհութեան։ Քանզի ահա դարձեալ միայն տեսողք եղիցն նորա. ոչ սպասաւորք յառաջընթացք, ոչ գոչումն փողոյ կարապետ, ոչ կառք քառադիմի, ոչ հրեղէն անիւք պատուանդան. քանզի 'ի սեպհական հայրենիսն երթայ։ Այլ երկուումն տեսանելոց էք զնորա սքանչելի, յորժամ գայ հրոյ ելանէ առաջի նորա՝ ընդ իջանելն. յորժամ պատռեն երկինք զվայելչութիւն նորա, և տեսանեն ամենայն ժողովուրդք զփառս նորա. յորժամ հազարք հազարաց պաշտեն զնա, և բիւրք բիւրուց կացցեն առաջի նորա. յորժամ հնչումն զօրաց նորա դղրդէ զերկիր, և ձայն փողոյ աւետեաց նորա զարթուցանէ զմեռեալս. յորժամ խաչ նախատանաց նորա՝ ճառա-

գայթից տրեգականդ յաղթէ. և
վէրք ձեռին նորա զհայեցող թըշ-
նամին տուղէ: Ահա տեսէք թէ
որպէս սլացաւ, և զօղս թեթև
ընթացիւք խուռմբ զքանչելապէս
կոխեալ բարձրացաւ. և 'ի մարմ-
նական աչաց ձերոց ստորակայու-
թեամբ ամպոյգ ծածկեցաւ: Արդ
այժմ բացէք զիմանալի աչս մտաց,
և յառեցէք 'ի յերկինս՝ ուսանել
խորհուրդս անպատումս: Քանզի
աստ իշխանութիւնք հրեշտակաց՝
ցնծութեամբ եկին նմա ընդ ա-
ռաջ. ոմանք զդրունս աւետարա-
նեն համբառնալ, և ոմանք զթա-
գաւորէն հարցանեն ուսանել:
Ներքինքս անուանեն զնա թագա-
ւոր փառաց. և վերինքն տարա-
կուսին, թէ ո՞վ է սա թագաւոր
փառաց, որ ընդ երկինս ճանա-
պարհ 'ի յերկրէ առանց օգնա-
կանի ինքնիշխանութեամբն հոր-
դեաց: Գաբրիէլեանքն աղաղա-
կէին. Տէր զօրութեամբ իւրով,
Տէր կարող 'ի պատերազմի. և մի-
քայէլեանքն հիանան, և Զի՞նըդ

կարմիր ունին հանդերձ զի՛ն զայն ա-
րեան և մարմնոյ:

Այսօր այլայլեցաւ սովորու-
թիւն կարգաց հրեշտակաց. զի մե-
րինքն ուսանին, և տարրինքս վար-
դապետեն. քանզի Աստուած 'ի
տարրնակայնոցս 'ի մեր եղանէ, ձեր
փրկութեան աղաղակաւ խնդա-
հեալ: Մեծ է առ երկնաւորս
այժմ փրկութեան ձեր ուրախու-
թիւն. զի առհա զխորհուրդն մար-
դեղութեանն Աստուծոյ, որ ծած-
կեալն էր յաւիտենանցն և յազ-
գաց. այժմ յայտնապէս տեսա-
նեն, և շուրջ զնովաւ պարս բոլո-
րեն: Տէր ամենակալ, աղաղակէին,
մինչև յերբ ոչ ողորմիս վերինս Ե-
րուսաղէմի, և քաղաքացն դրախ-
տին, ուստի արտաքս ձգեցեր զե-
րե զբնակիչն զԱդամ, և անտեսս ա-
րարեր թողեալ ամայի այս եօթ-
նեակ գսորուց եօթնից: Եւ լուան
այսօր պատասխանի բանիս բարեաց
և մխիթարութեան, զի ասէ. Փրր-
կեաց զնոսա բազուկ իմ, և սրտմը-
տութիւն իմ միայն զգէմ կալաւ:

երկինս ընթանայ: Եթէ յօդաւոր բնութեան նիւթական, զիարդ միայնակ ընթանայ առաջի ձեր, և ոչ հրեղէն կառօք և հեծելօք օգնեալ: Եւ թէ պարզ բնութիւն անմարմին, կարմրաներկ պատմուճանաւ մարմնոյ որպէս զարդարեալ՝ երբ զփեսայ ընդ առագաստ երկնից սրգալով ընթանայ: Ուսուցէք մեզ, ով վերակացուք մարդկան ազգի՝ գաւք հրեշտակաց. Ով է այս թագաւորս՝ որ ծագեաց երբև զառաւօտ, գեղեցիկ որպէս զլուսին, ընտիր երբև զարեգական, երբև զհիացումն կարգեալ: Գիտեմք և զայլս 'ի մարմնաւորաց ելեալս 'ի յերկինս, բայց ոչ այսպիսի բուռն զօրութեամբ: Ենովք յորժամ փոխեցաւ առ մեզ՝ դուք եղէք նմա վերաբերողք. Եղիայի 'ի ներքոյ զձեզ տեսաք կառաւ և երիվարս հրեղէնս ընծեալս. վասն զի անկար է մարմնոյ՝ ընդ թեթև շաւիղս անմարմնոցս կոխել: Իսկ այս թագաւորս ով է, որ եղանակէ յերկրէ զգեցեալ ծիրանիս.

պատկեալ խաչիւ, պաշտօնաձեւեալ ա-
րեամբ, մարմինն նուիրական՝ գեղով
վայելուչ, բաւական ընթանայ ան-
մարմնոցդ տուաւչի: Մարդ է, և ա-
ռանց օգնականի չուէ. արիւն է
զգեցեալ, և զհետս անարեանց
համարձակ ընթացիւք կոխէ. յԵ-
դեմայ գայ և յերկրէ, և բաւան
զօրութեամբ զերկինս գողացու-
ցանէ: Դրանց ոչ կարօտանայ բա-
նալոյ, զի ահա բանիւ զդուռն աս-
պալէ: Սակայն թէ ով է սա՝ ու-
սուցէք մեզ, ով հրեշտակք, որոց
և մեք միշտ զխորհուրդն Աստու-
ծոյ՝ 'ի ստորև հեղեալ ցուցա-
նեմք:

Ցայնժամ սկսան նոքա զայս ա-
սել. Տէր զօրութեանց և երկնից
է սա, թագաւորն՝ որոյ դուք սրով-
բէքդ աղաղակէիք. Սուրբ սուրբ
սուրբ տէր զօրութեանց, լի են եր-
կինք և երկիր փառօք քոյ: Տէր
փառացն է սա, որում դուք քրով-
բէքդ երգէիք, Օրհնեալ են փառք
Տեառն 'ի տեղւոջէ իւրմէ: Ար-
քայն է սա յաղթող, որում դուք

չորեքքեղեկեան աթոռոյդ՝ հանդերձ փառաւորացն ընծեցէք: Սա երեւեցաւ յերկրի մարմնով, և արդարացաւ հոգւով, հաւատարիմ եղև աշխարհի, և դարձեալ գայ յերկնից փառօք. և զի ոչ խոնարհեցաւ յերկնից որպէս զմարդ՝ գոլով մարդ, ոչ կարօտանայ բարձրացուցանողի ընդ երկնին՝ գոլով Ճշմարիտ Աստուած:

Եւ մինչդեռ հրեշտակք և հրեշտակապետք և սերովբէքն և քերովբէք սկսեալ զայսոսիկ խօսէին, ինքն որ առաջի ընթանայր, սկսաւ ընդ առաջ եկեալ մերնոցն գաւուց՝ զայս պատասխանել. Ես եմ որ խօսիմ զարդարութիւն, և իրաւունս փրկութեան. Ես եմ որ իրաւամբք և արդարութեամբ յաղթեցի. և կոխան զթշնամին հակառակամարտ արարի. Ես եմ որ զգերեալ ազգ մարդկան փրկեցի, և դարձեալ զլոյս նոցին յերկինս ուղղեցի. Ես եմ որ զթշնամութիւն՝ ի մարմնին իմ սպանի, և խաղաղութիւն յերկինս և յերկրի արարի:

և պետութեանց երկնայնոց զնո-րոգ արուեստ քոյ իմաստս, Աս-տուած մեր և տէր:

Ոչ թէ որպէս դուք կարծէք, ասէ, աստուածային զօրութեամբ իմ, մեծ երկնաւորք, 'ի գլուխ ա-ծեալ զմարդկան փրկութիւն ուղ-ղեցի, և ոչ թէ կարք և երկրաւորք հրեշտակացդ ինձ 'ի մարտս պաշտ-պանեցին, և ոչ թէ փրկեալ ինն հեթանոսք 'ի փրկագործութեանն ժամանակ օժանդակեցին, այլ փըր-կեաց միայն բազուկ իմ, և սրբու-թիւն արդարութեանն մարմ-նոյս իմոյ միայնակ առանձինն կա-ցեալ ընդդէմ՝ կռուեաց զթշնա-միսն: Միայն 'ի լեառնն ալէսալէս փորձութեանցն յաղթեցի, և զԱ-դամայ պատուիրանն 'ի նոյն հնարս կոխեցի: Միայն ընդ մաքսաւորսն ճաշակեցի, և 'ի ճանապարհս վաս-տակեալ քրտնեցի, և 'ի սուգ սի-րելեացն լացի, և զմարմինս բնա-կան կրիւքն արդար պահեցի: Միայն 'ի խաչին չարչարանս դիմե-ցի, և յերկիւղէ մահուն սարսեցի.

և կամաւ զնոյն կրեսցէ, և զփչխանն
աշխարհէ երաւանքը դատաստանապար-
տեալ արտաքս ձգեսցէ։ Միայն 'ի
Պիղատոսէ յատեանն կացի, և կա-
տականացն արհամարհեալ զա-
մօթ՝ ժուժեցի, և յերկոտասան
բիւրուց ձեր՝ զոր ինձ 'ի Թիկունո-
չածի։ Միայն 'ի փայտս խաչին հե-
ղուաց, և զգիրս մարգարէիցն լցի,
և զպատմուճանս իմ յարիւն իմ
Թաթաւեցի, և զԹշնամին կոխան
ոտից իմոց եղի։ Զէն ոչ առի 'ի
ձեռս զհրեղէն ձեր սուր, այլ տէ-
կար մարմին. փոխանն՝ ոչ զանձնիւթ
ձեր բնութիւն, այլ արիւն Թանձ-
րամած. և այսպէս պատերազ-
մեալ յաղԹեցի աշխարհի։ Վասն
այսորիկ արդարութեամբ իմով և
կամաւոր մահուամբ զմեղաւորաց մարդ-
կան զմուրհակն պատառեցի. և
այժմ ելանեմ նստել ընդ աջմէ
Հօր, բարեխօս և քահանայ հօտին
իմոյ, զոր պատուականն արեամբ
իմով գնեցի։

Զայս լուեալ զուարթք հրեշտա-
կացն՝ սքանչանային ընդ անհաս

խորհուրդ բազմապատիկ խնամա-
ռութեանն Աստուծոյ. զի մինչև
ցայժմ ոչ անկարութեամբ և
խոնարհութե՟ զիջանէին զնա յաղ-
թօղ, այլ կարողութեամբ և փա-
ռօք. իսկ այժմ ուսեալ ոչ միադի-
մն զիմաստաս Աստուծոյ, այլ բազ-
մապատիկ: Զի առ փոխանակ կա-
րողութեանն՝ զանկարութիւն, և
փոխանակ զօրութեանն՝ զխոնար-
հութիւն մարմնոյս, և յաղթեաց
սատանայի իրաւամբք և արդարու-
թեամբ: Սկսան ապա Նոր եղա-
նակաւ զերգս նմին վերերգել, և
զմարդիկ 'ի կցորդութիւն օրհներ-
գութեանն իւրեանց ժողովել:
Ծափս հարէք, ասեն, ազգք հե-
թանոսաց, համաձայն քաղցր եր-
գոցս հրեշտակաց. և աղաղակե-
ցէք ընդ մեզ փառաց թագաւորիս
'ի ձայն ցնծութեան գոհութիւն
օրհնութեան: Զի թագաւորեաց
'ի վերայ ամենայն երկրի իրաւամբք
և արդարութեամբ, և հնազանդ
արար զձեզ ընդ մեզ աւետարա-
նական խաղաղութեան. զի չինեաց

յերկինս զհամբառնալն իւր առ-
տուածապէս զօրութեամբ, և հաս-
տատէ յերկնի զաւետիս իւր՝ առ-
հաւատչէիւ մարմնոյն վերացմամբ:
Դարձիք նստարուք յԵրուսաղէմ
մեծաւ խնդութեամբ, և սպասե-
ցէք ըղձանոք զօրութեան 'ի գալ
հոգւոյն սրբոյ 'ի բարձանց: Ահա
մտանէ քահանայապետս առ Աս-
տուած պատարագաւն հաշտու-
թեան, և առնէ խաղաղութեան
ընդ ձեզ Հոգւոյն սրբոյ առաք-
մամբ: Նստի բարեխօս ընդ աջմէ
Հօր հանապազորդ մարդկան քա-
ւութեան, և առնէ խնդրուածս
վասն ձեր փրկութեան: Հայր, կա-
միմ զի ուր եմ ես 'ի ծայրագոյն
գահոյս վերոյ ամենայն անուան,
մնացէ եկեղեցի իմ առաւանել ըզ-
փառս զոր ստացայ՝ ընդ խաչի չափ
քեզ հնազանդութեան: Հայր, կա-
միմ զի անդամք իմ որ 'ի ստորին
վայրս ցնդեալ կան, բարձրացեալ
յօգեսցին 'ի հաստատ մարմնոյ իմ
լրմամբ: Հայր, զորս ետուր ինձ
զինքն արեան ժողովուրդ սեփհա-

նով․ շնորհօք և գթութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր ամենակալի և կենդանարար սուրբ Հոգւոյն՝ ի մի փառս, ՝ի բնութիւն և յաստուածութիւն վայելեն պատիւ և իշխանութիւն այժմ և յաւիտեանս յաւիտենից․ Ամէն ։

# ՆՈՐԻՆ

# ԵՐԱՆԵԼՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ

## ՆԵՐԲՈՂԵԱՆ

Ասացեալ 'ի հրաշափառ գալուստ
Հոգւոյն սրբոյ:

ԱՑԻԳԻՄ 'ի սիրոյ արտեւս բաղձանաց նուիրել զբանս աղքատիմաց մտաց իմոց՝ աւուրս մեծի: Հանգանակեցէք տկարութեան իմոյ զպարգեւս աղօթից, հանդիսացեալ ժողովուրդք: Տուք ինձ ընտանեալն այսօր շնորհս աշխարհի, որպէս զի անձկեհեր արկից զանձն իմ 'ի խորս իմաստից գիտութեանն Աստուծոյ, և սեղանում.

կամին անձին սեպհականեաց զկեն-
դանութիւն։ Եւ ո՞ այսր շնորհի միջ-
նորդ և մատակարար. ո՞չ այլ ոք,
բայց եթէ Տէր մեր Յիսուս Քրիս-
տոս, կեանքն, լոյսն, ճանապարհն,
դուռնն, հովիւն, քահանայա-
պետն, յոյսն, միջնորդն, բարեխօսն
և կարապետն։ Որ անց ընդ եր-
կինս երկնից ինքնիշխան զօրութբ,
և եմուտ հրաշափառապէս 'ի ներ-
քին կողմն վարագուրին. և եդ
յանգիման Աստուծոյ Հօր զառ-
հաւատչեայն 'ի մարդկանէ բարե-
խօս վասն մեր. ուստի առեալ փո-
խարէն զձիր առատ տարածեաց
յերկիր։ Յորմէ զմայլեալ արբե-
ցաք, և զերկունս տրտմութեան
նախամօրն յաւէտ մոռացաք։

Այսօր խաւարաւ պատրանաց
աշխարհի ընկլուզեալքս՝ ընկալաք
զլոյսն իմանալի, պայծառացու-
ցիչ հոգւոց և առաջնորդ յեր-
կիրն կենդանեաց։ Այսօր զզգեստ
Թախծութեան՝ զոր ընկալաք 'ի
հօրէ մերմէ Ադամայ՝ մերկացաք.
քանզի նորն Ադամ զարդարեաց

զմեզ յոսկեհուռն պաճուճեալ և պսակեալ: Այսօր հուրն սքանչելի՝ երկնաւոր բոցաճաճանչ նշուլիւք արտափայլեալ ՚ի յերկիր՝ այլայլութեամբ արծարծեալ կիզեաց ՚ի մարդկանէ զփուշն, և ըզսատակիչ պատիժս պատուհանի մեղացն անիծից: Այսօր լեզուաց հրեղինաց վիճակի գտեալ արժանի ազգ՝ որ հաւասար էր անասնոց անմտից, դարձեալ ստացաւ վերստին զշնորհն բանի, պատկերակից գտեալ արարչին իւրոյ: Այսօր հնչիւն սաստիկ հողմոյ և քաղցր ցօղոյ Հոգւոյն ոռոգաց յերկիր, և զբարբառ անիծիցն որ շարժեցաւ վասն Ադամայ՝ դարձեալ փոխարկեաց յօրհնութիւն: Այսօր հոտ բուրման անուշահոտ կնդրկի անապականութեան ծաւալեալ՝ զծուխ մահու մառախլապատ թանձրութեան յեղաշրջեալ յանմահութիւն հաստատեաց: Այսօր զգալի պատարագի՝ զոր առաքեաց զգալի աշխարհս ՚ի գաւառն իմանալի՝ ընկալաւ առհա-

ւառաջնեայ փոխարինի զՀոգւոյն խաղա-
նալն, որ նորոգեաց զաստարբ ստ-
րին գտանի 'ի ձև պատկերի ան-
նութեն քաղաքի :

Ո՛վ մեծի տուրևառութեանն շա-
հի երկնայնոցն և երկրայնոցս : Զի
տայր առնու մարմին, և 'ի նոցա-
նէ տայն զՀոգին : Տուեալ Ադամայ
ընծայեաց զՔրիստոս, և առնուն
Աստուծոյ Հաւատոյ սմա փոխարէն
զմխիթարիչ սուրբ Հոգին : Մար-
դիկ առնուն զմարդն Աստուծոյ, և
Աստուած ետ զԱստուած մարդ-
կութեանս : Այս է տուրևառու-
թիւն՝ Աստուծոյ արդարութեանն
քարոզ. նախ 'ի մէնջ 'ի ծառայէցս
պատարագ Հնազանդութեան, և
ապա 'ի Տեառնէն պարգևք խա-
ղաղութեան. նախ 'ի մէնջ խաղա-
ղութիւնն Քրիստոս, որ քակեաց
զմիջնորմն ցանկոյն՝ որպէս զերկո-
ւոյնն մի, և ապա յԱստուծոյ ա-
ւետեաց Հնչումն, որ աւետարա-
նեաց խաղաղութիւն Հեռաւորաց
և մերձաւորաց : Յառաջագոյն
յՈրդւոյ նուաճեալ թշնութիւն՝

տայցն՝ և անխափան մնացեալ. և վասն ո՞յր պատճառի միայն ընդ իջանել Հոգւոյն այնքան շնորհիւ զարդարեալ պսակեցան: Առ ի՞նչ Քրիստոսի այնքան մեծամեծ նշանօքն ոչ զոք հաւանեցուցեալ, և Պետրոսի յայսմ աւուր միով քարոզով զթիւ երից հազարացն աշակերտեալ: Զոր քննել արժան է, և զգանձս իմաստութեանն Աստուծոյ յըշտեմարանս սրտից ամփոփել, առ 'ի կարող լինել նախ սրտիւ հաւատալ յարդարութիւն, և ապա բերանով խոստովանել 'ի փրկութիւն: Քանզի փրկագործութեանս յեղանակ ոչ է զօրութեամբ, այլ խրատամբք և արդարութեամբ: Որպէս զի ընդ ամենակարող զօրութեան Աստուծոյ և ամենաբաւական ողորմութիւնն յերկինս և յերկրի հաստատեսցի:

Քանզի այն որ արար զմարդն 'ի պատկեր բարերարութեան իւրոյ բարի, և ետես զնա 'ի նախանձուէ բանսարկուին զաւաճանեալ և մեռեալ, ըստ արդար խրատանցն ոչ

կամեցաւ զպատուիրանօք ըմբռնեալն թողուլ 'ի ձեռս որսողին: Ասաց ընդ Բանին համագոյականն. Էջ հաղորդեաց ընդ բնութեանն զոր ընտեղծաք 'ի բարի. մի՛ արդեօք բընաւորապէս բղխէ զծուխս չարութեանն՝ որ առաջի իմ բարդի: Ծանիր, զի թէ ըստ բնական կրիցն տկարանայ առ օրէնս իմ, անմեղադրելի է 'ի պատուհասէն՝ զոր նա սահմանաւն ածէ 'ի վերայ նորին. իսկ եթէ օտար 'ի բընութենէ, և եկամուտ ունի զայն արկածք, զպատրողն յանդիմանեալ դատապարտեա, և զնա ողորմութեամբ և գթութեամբ նորոգեա:

Զայս պատուէր առեալ 'ի Հօրէ Բանին՝ հաղորդեցաւ ընդ մարմինս, և մարմինս խառնեցաւ ընդ Աստուծոյ. խառնումն անճառ, և յատկութիւն էութեանցս անշփոթ, որպէս զի սպառընթաց մարմնոյն՝ անձամբ անձին փորձեալ ծանիցէ: Եկաց նովաւ զամս երեսուն, և ոչ հաղորդեցաւ օ-

Աստուծոյ: Եւ լուեալ, եթէ բա-
նիւ Աստուծոյ կեայ մարդ առա-
ւել քան հացիւ՝ է գրեալ, զբանս
չես հնարէր զողանալ:

Յայնժամ ծանեաւ զհաղբան, խայտառակեալ զմեքենայսն, պատուեաց զպարտուրեալ Թակարդն՝ որով սովոր էր որսալ զմարդիկ: Մեկնեաց առաջի Հօր իւրոյ և հրեշտակաց. և ինքնիշխանութե 'ի բաց վարեաց զպատրողն, պատրեալ բնութեանս օրինօք: Մանուկն Դանիէլ արդար դատեցաւ դատաստան, յամօթ արար ըզծերսն չար՝ զպատրիչ մարդկութեանս, որք զմեղս իւրեանց սմա համբաւէին: Ա՛յ հնացեալ, ասէ, աւուրբք չարութեան, այժմ եկին հասին մեղք քո՝ զոր գործէիր յառաջագոյն. զի դատէիր դատաստան անիրաւութեան, և զանմեղ բնութիւն մարդկան՝ քեզ կըցորդս դատապարտէիր: Նախանձ քո չար պատրեաց զքեզ. և ախտ մարդատեցութեան շրջեաց զսիրտ քո: Այսպէս խաբէիք զորդիս

մարդկան. և նոքա առ երկիւղի հաւատարէին կամաց ձերոց. բայց ոչ և որդի երկնաւոր Հօրն կալաւ յանձին զանօրէնութիւնս ձեր։ Զայս ասելով, և առ ոտն կոխելով զօձն ծերացեալ՝ յայտ արար զառաջին յաղթութիւնն, և զանմեղութիւն բնութեանս առաջի Հօր իւրոյ և հրեշտակաց։ Յայնժամ մատեան հրեշտակքն, և պաշտէին զնա հարկաւորօքն, յորժամ յաղթեաց չարին բնաւորականօքն. և արդարացեալ բնութիւնս՝ տիրեաց 'ի վերայ դիւացն հակառակորդաց՝ զօրաւորն բազկօք։

Արդ քանզի նա միայն գտաւ անփորձ 'ի չարէն և հաճոյ Աստուծոյ, վասն այսորիկ սկսաւ կոչել զմարդիկ յապաշխարութիւն կենաց՝ արքայութեանն յուսով։ Իսկ նոքա խաւարեալք 'ի պատրանացն՝ դժուարէին հետևել կոչողին, և ծանրանայր սահեցելոցն յերկիր՝ նայել ընդ երկինս։ Եւ պատրեալքն 'ի ցանկութիւն աշխարհիս՝ ոչ ախորժէին զփառս

վերին. և բռնութեամբ ձգել ան-
մարթ էր՝ անձնիշխան զնոսա ըս-
տեղծողին. և Նշանօքն և վարդա-
պետութեամբն սակաւք եկին 'ի
հաւանութիւն: Ապա զի՞նչ առ-
նէր. ով սքանչելեացս. քանզի
պատժոց պարտական էին մար-
դիկ, և ապա յարդարութենէն
Աստուծոյ ողորմութեան արժա-
նի գտանել, Նա՝ որ անպարտա-
կանն գտաւ առաջի Հօր իւրոյ և
հրեշտակաց, 'ի գործ արկեալ ըզ-
բազմապատիկ իմաստութիւն իւր՝
մեռաւ պարտականացս ամենե-
ցուն փոխանակ. և ջնջեալ պա-
տուեաց զձեռագիր մերոյ յան-
ցանաց: Էջ 'ի դժոխս՝ որում ոչ
էր հնար ըմբռնել 'ի մահուանէ, և
արձակեաց զմեռեալսն: Եկն առ
կենդանիս նոյն ինքն՝ և հաստա-
տեաց զնոսա: Եւ զորս յանցա-
նօքն Ադամայ 'ի ներքոյ էին դա-
տապարտութեան մահու, շնոր-
հօք անմեղութեան իւրոյ վերա-
ծեաց յարդարութիւն կենաց և
յերկիրն պարգևաց: Քանզի այս-

անդոյշ։ Յայնժամ ամենատեսուչ հայեցաւ հայրն երկնաւոր 'ի յերկիր· արդարոյց զնա յորդառատ գետով ոսկեղբ հոգւոյն, և փրթթեալ ծառկեցոյց զանազան բոյսս առաքինութեան 'ի բազմապատիկ տնկոց արմատոց, որպէս և վկայեաց մարգարէն։ Ահա ձիր՝ որ ոչ չափի· և պարգև՝ որոյ ոչ կշիռ գործոյ զուգակշի։ Ահա տուր՝ որոյ խոկութիւն ընտրութեանն ոչ պարփակի, և շնորհ՝ որոյ ոչ զեղումն գերազանց՝ մտաց սահմանի։ Ահա ողորմութիւն առատ՝ որ ամենայն թագաւորութիւն աշխարհիս հաւասարեալ՝ փոքր գտանի· և մխիթարութիւն՝ որոյ ոչ ուրախութիւն մարմնաւոր լծորդի։ Քանզի ո՞ ոք կարաց ընդ տիրելն աշխարհի՝ և զանապականութի ստանալ· կամ ո՞րում թագաւորի եղև ձեռնարկելի զմահ 'ի կեանս փոխել· կամ ո՞ր երանութիւն մարմնաւոր՝ կարաց զկեանս յաւիտենականս ընդգրկել։ Իսկ սա յիջանելն այսօր 'ի վերայ դասուց առաքելոցն՝ զօրացոյց ըղ-

լից զամենայն տունն յորում նըս-
տէին ։ Եւ երևեցան նոցա բաժա-
նեալ լեզուք իբրև 'ի հրոյ, և նըս-
տաւ իւրաքանչիւր 'ի վերայ նոցա ։
Եւ լցան ամենեքեան Հոգւով սըր-
բով, և սկսան խօսել յայլևայլ
լեզուս, որպէս և Հոգին տայր
բարբառել նոցա » ։ Միաբան էին
ամենեքեան 'ի միասին, ասէ, որ-
պէս զի ցուցցէ՝ եթէ ոչ երկոտա-
սանիցն միայն, այլ և Աստուածա-
ծին կուսին ընդ նոսա, հանդերձ
կանամբքն որք պաշտէին զՅիսուս
'ի Գալիլեա, և աւետողք եղեն յա-
րութեանն ։ Ընդ որս և եօթա-
նասնիցն գունդք հանդերձ ամե-
նայն ծանօթիւք ։ Արդ եկն 'ի վե-
րայ նոցա Հոգին սուրբ ըստ նախ-
խոստմանն Քրիստոսի, որ ասաց․
Ահա ես առաքեմ զաւետիս Հօր
իմոյ 'ի ձեզ․ և դուք նստարուք 'ի
քաղաքիդ Երուսաղէմ, մինչև զգե-
նուցուք զօրութիւն 'ի բարձանց։
Եւ հնչիւն որոտման հողմոյ եհար,
որով ցուցանէր զառաւելութիւն
հեղմանն ։ Դարձեալ զի և նոյն

Հոգի էր, որ 'ի սկզբան շրջէր 'ի վերայ ջուրցն. ելից զատուցն ընդ իմանալի զօրութեանն եւ զգալի տեսակ հրոյն 'ի սքանչացուցմն տղայաբարոյիցն: Եւ ապա բաժանեցաւ 'ի հրոյն յայնմանէ լեզուք, եւ հանգեաւ 'ի վերայ իւրաքանչիւր ումեք 'ի նոցանէ. որով նշանակէր զպարգեւս շնորհի այլատարազ լեզուախօսութեանն: Ուստի եւ ընդ հանգչելն 'ի վերայ նոցա զգալի մարմնոյն՝ զգայարանացս տեսանելի լեզուքն հրեղէնք, միտք նոցա իմանալի զօրութեամբ իմաստնացեալք՝ սկսան յայլատարազ խօսս զլեզուսն շարժել: Ըստ որում ասէ. Խօսէին յայլ եւ այլ լեզուս, որպէս եւ Հոգին տայր նոցա բարբառել: Ոչ եթէ վասն զի լեզուացն շնորհ նախամեծար էր, այլ քանզի առընթեր ոչ գոյր այլ նշանակ՝ զշնորհն որով զօրացանն՝ հրատարակել: Իսկ այլատարազս խօսելով զբովանդակ ամբոխ քաղաքին ած 'ի վերայ նոցա հիացեալ, ըստ որում եւ ասէ. Եկն

բարբառս նոցա պատասխանեն: Մատթէոս որ 'ի Կափառնաում ար-նաւ, լսեմք՝ զի ընդ համեմայեցւոց լեզուն խորոխառնելով արշաւէ: Եւ Փիլիպպոս որ 'ի Բեթսայիդա գալիլեացւոց՝ արաբացւոց բարբառովն զխօսս իւր յօդէ: Յովհաննէս որ 'ի Նազարէթ անեալ՝ զո՞րդ կիլիկեցւոց ձայնիւն զմեզ հարցանէ: Եւ Թովմասու աղքալեն, որ յեթովպացւոց լեզուն զբանս մարգարէից յիշեցուցանէ: Թադէոսն այն ախմար՝ տեսէք ո՞րքան վայելուչ մեծաց Հայոց բառիւքն զբանս իւր յօդէ: Եւ Բարթուղիմէոս մանուկ՝ իբր թէ 'ի Մարս ծնեալ՝ զնոցին խօսն հնչեցուցանէ: Ո՛վ զքանչելեացս. 'ի զանազան գաւառս ծնեալք, և ախատութեամբ 'ի բարբառս նոցին վարժեցայք. և արդ տղքին՝ որք ոչ տեսին զնոյն քաղաքս՝ անաշխատ զնոցին ձայնս հնչեն: Մեծ է, ասեն, արուեստ զքանչելեացս. թէ առ ինչ ունի աւարտել՝ ոչ կարեմք նկատել:

Յայնժամ յարուցեալ Պետրոս հանդերձ մետասանիւքն համբարձ զձայն իւր, և սկսաւ տարակուսանացն լուծումն շնորհել. Արք հրէաստանեայք, և ամենեքին որ բնակեալ էք յԵրուսաղէմ, այս ձեզ յայտնի լիցի, և ունկն դիք բանից իմոց: Ոչ է արբեցութիւնս այս գինւոյ յերեք ժամու աւուրս, որպէս դուք կարծէք, այլ բաժակ է բերկրութեան, առհաւատչեայ անապականութեան, մարգարէիւք նախագուշակեալ, և յայսմ ապա աւուր խորհրդոյն 'ի լրումն աւարտեալ: Ով օրէնսուսոյցք և մարգարէից աշակերտք, այս այն է 'ի Յովելեայ ասացեալն, զոր միշտ ընթեռնուք՝ կատարեցաւ: Քանզի ահա յաւուրս յետինս եհեղ Աստուած յոգւոյ իւրմէ 'ի վերայ զանազան հասակաց մարմնաւորացս, և մարգարէանամք: Այս Յիսուս Նազովրեցի՝ որ երևեցաւ առ ձեզ նշանօք և արուեստիւք, և տարապարտ խաչեցաւ ել յերկինս՝ և նստաւ ընդ աջմ

Աստուծոյ. և զայս պարգևս ըն-
կալեալ Հոգւոյն սրբոյ 'ի Հօրէ,
սփռեաց 'ի վերայ մեր: Սա յոր-
ժամ համբառնայր յերկինս փա-
ռօք՝ մեզ ուխտեաց. և մտեալ յեր-
կինս, Հօր և Հոգւոյն հաւասար
նստեալ՝ զայս ասաց. Ես զգործն
զոր ինձ հաւատացէք՝ կատարեցի
յերկրի. զանուն Հօր իմոյ փառա-
ւորեցի առ մարդիկ. զեղծեալն 'ի
մախանաց չարին զպատկերակից
մեր՝ ընդ բնութիւն աստուածու-
թեանս մեր խառնեալ՝ սրբեցի
սքանչելապէս: Զմահ իմ փոխա-
նակ ողորմելի և տառապեալ ազգի
մարդկան տուեալ՝ զերծուցի զնո-
սա յանիծիցն. և այժմ Նովին
մարմնով եկեալ՝ առնում զերկըր-
պագութիւն յերկնաւորացս: Այ-
սուհետև քեզ եկեալ եհաս ժա-
մանակ գործոյ, ով փառակից իմ
Հոգի. պարտիս և զքոյդ մարդա-
սիրութիւն ցուցանել 'ի յերկրի.
այսուհետև քեզ ապաստան առ-
նեմ զանուն աստուածութեանս
մեր յարգել առ մարդիկ: Հայր

նոցա խոստացեալ վերին բարեացն խորհել։ Ոչ են ծանօթ երկնաւոր փառաւորութեանն, այլ միշտ ընդ երկիր յածին. կարծեօք ունին զայս ճշմարտութիւն, և այն է համարեալ առ նոսա կեանք վայելուչ։ Վասն որոյ գու զաղաղայութիւն մտաց նոցա նախ նշանօք և աքանչելեօք զարմացո, և զկարծիս նոցա 'ի հաւատս հաւանութեանն՝ բժշկութեան շնորհիւն ուղղեաս։ Մի՛ արգելցես զառատութեան քո շնորհս, 'ի փառս և 'ի գովեստ աստուածութեանս մեր բաշխել։ Մեծ է, զի որպէս երկինս, նոյնպէս և երկիր լցցի փառօք աստուածութեանս մեր. և որպէս զհրեշտակս՝ սոյնպէս զմարդիկ ստասցուք անուանս մեր օրհնաբանիչս։ Ոչ է զարմանք եթէ զմեր արարածն մոլորեալ՝ մերով բազմապատիկ զօրութեամբ առ մեզ նուաճեսցուք։ Արդ էջ աղաչեմ, էջ, զի պաշտարեալ է տարակոյսն զնոսա։ Փոքր ինչ 'ի անօրէնութեան մահուն մեկնեցայ, և երկուանք որպէս

ըծննդականի պաշտօնեայ զիմ ա-
շակերտս, մինչ երագեալ զպա-
րութիւնն՝ մխիթարեցի զնոսա։
Մինն 'ի մետասանիցն ոչ էր անդ,
և տասանցն վկայելոյ ոչ հաւատայր
վասն յարութեանն. մինչև դար-
ձեալ յայտնեցայ նոցա, և զխո-
ցուած կողիցս՝ հաւատ նմին մը-
տացն ետու շօշափել։ Եւ այժմ
իմ ճանապարհ արարեալ ընդ եր-
կինս, մի՛ կարճմտութիւն նոցա
գայթակղեսցի 'ի մխիթարութենէ
քո յուսոյդ։ Վասն որոյ երա-
գեալ մխիթարեա զորդեակսն իմ
և զաշակերտսն։ Գնա հանգիր 'ի
նոսա, որպէս խոստացայ նոցա, և
վարդապետեալ յիշեցո նոցա զա-
մենայն առ յինէն ասացեալսն։

Յայնժամ սլացեալ ամենակարն
զօրութիւն, փրկականն առատու-
թի՛, հեզութեան աղբիւրն, մար-
դասէր շնորհն, բարութեան Հո-
գին, հեզումն առատութեանն Աս-
տուծոյ, անցանէր ահեղ որոտ-
մամբ ընդ դասակարգութիւնս ան-
մարմնականացն պարուց. և աքան-

ջանցեալ պատկերն հիացմանցն նահատակութեանց երկնաւոր զօրացն։ Վասն զի զոր ցանկային ընդաղօտ տեսանել, նայեցան իսկական էութեամբն դիմեալ, 'ի մերայ երկրածին ազգի մարդկան ախտակալ։ Քանզի էջ բոլորովին անձնաւորութիւն Հոգւոյն սրբոյ այսօր 'ի դասս առաքելոցն գնդի, որպէս միածինն 'ի յարգանդ կուսին։ Եւ որ եկն, այլ ոչ մեկնեցաւ. այլ մնաց յեկեղեցի Քրիստոսի ըստ անսուտ խոստմանն իւրն փեսայի, որ ասաց. Ընդ ձեզ բնակեսցէ, և ընդ ձեզ եղիցի յաւիտեան։ Որ և զօրացոյց այսօր զառաքեալսն, և նոցա մատակարարութեամբն՝ զընդհանուր աշխարհս։ Զի և սմա առաւել քաղցրացաւ ճաշակ մարդկան փրկութեան, ընդ որս եկաց և բնակեցաւ։ Ուստի և Պետրոս կրելով յինքեան զՀոգին, զստելն Անանիայի ոչ մարդկան ստայր, այլ Աստուծոյ. Ընդէ՛ր, ասէ, եդիք 'ի մտի ստել Աստուծոյ և փորձել զՀո-

զՀգն Աստուծոյ, զՀս կամելով պատրել. ոչ մարդկան ստեցիք, այլ Աստուծոյ: Սորա շնորհն՝ 'ի դնելն զձեռս առաքելոցն՝ հանգեաւ 'ի վերայ Ստեփաննոսի, որ և անդէն զօրացաւ առնել նշանս և արուեստս մեծամեծս: Սա արդարև որպէս Թագաւոր եկեղեցւոյ՝ որոշէր զՊաւղոս և զԲառնաբաս 'ի գործ բանին իւրոյ սպասաւորութեանն: Սա զօմանս ընտրեաց յառաքելութիւն, զօմանս 'ի մարգարէութիւն, զայլս 'ի հովուութիւն և 'ի վարդապետութիւն. որպէս Մատաթեայ զառաքելութիւնն վիճակեաց, և Ագաբեայ և Տիմոթեայ՝ զմարգարէութիւնն, և երիցանցն Եփեսոսի եկեղեցւոյն՝ զհովուութիւն և զվարդապետութիւն. Զգոյշ լերուք, ասէ, հօտիդ՝ որում եդ զձեզ Հոգին սուրբ տեսուչս և վարդապետս: Սա արձակեաւ համարձակեցոյց զեկեղուս նիւթեղէնս կոչել հայր զԱստուած, որ նստի 'ի կառս հրեղէնս, և թևասքողեալ պաշտի 'ի

փառացն անմահին բարգաւաճութեանն,
և խռնեցան. և սքանչանային ա-
մենեքեան զարմացեալք. և այլք
վասն սքանչելեացն այլափոխմանն ա-
ռեկին, թէ արբեալք իցեն: Արդ
վասն ամենեցուն այսպէս գիտելի
լինելոյ շնորհիս, ոչ ներգործեաց
'ի նոսա Հոգւոյն ընդ իշխանելն` զխոս-
տումն Քրիստոսի, այլ զկերպաւն:
Զի նա ոչ ասաց` եթէ 'ի լեզուս
խօսիք Հոգւովս, այլ եթէ Ու-
սուսցէ զձեզ և յիշեցուսցէ զձեզ
զամենայն զոր ինչ ասացի ձեզ:
Այլ արդ եթէ զայս առնել էին
'ի սկզբանն, ոչ այնպէս ամբո-
խնել էին և զբազմութիւնն 'ի
նշաւակ անուսութեանն իւրեանց այ-
լատարազ խօսիւքն ձգեալ: Վասն
որոյ ամենիմաստն նախ առաջէս ըն-
ծանեկաւ 'ի խնճոյս խաղողոյ` զար-
մանալի փոփոխմամբն չփոթեաց
զնոսա: Զի որք երէկ և այսօր արք
զաւկեկեցիք զռեհիկք և չինականքն`
սոքա ասեն` խեղդ զիմաստունս Հել-
լենացիս Ճարտարաբանսն. և այլք
'ի պարթևական տարբաշխարհէն

Յայնժամ յարուցեալ Պետրոս հանդերձ մետասանիւքն համբարձ զձայն իւր, և սկսաւ տարակուսանացն լուծումն շնորհել. Արք հրէաստանեայք, և ամենեքեան որ բնակեալ էք յԵրուսաղէմ, այս ձեզ յայտնի լիցի, և ունկն դիք բանից իմոց: Ոչ է արբեցութիւնս այս գինւոյ յերեք ժամու աւուրս, որպէս դուք կարծէք, այլ բաժակ է բերկրութեան, առհաւատչեայ անապականութեան, մարգարէիւք նախագուշակեալ, և յայսմ աւուր խորհուրդն 'ի լրումն աւարտեալ: Ով օրէնսուսոյցք և մարգարէից աշակերտք, այս այն է 'ի Յովելեայ ասացեալն, զոր միշտ ընթեռնուք՝ կատարեցաւ: Քանզի ահա յաւուրս յետինս եհեղ Աստուած յոգւոյ իւրմէ 'ի վերայ զանազան հասակաց մարմնաւորացս, և մարգարէանամք: Այս Յիսուս Նազովրեցի՝ որ երևեցաւ առ ձեզ նշանօք և արուեստիւք, և տարապարտ խաչեցաւ, եւ յերկինս՝ և նստաւ ընդ աջմէ

Աստուծոյ. և զայս պարգևս ըն-
կալեալ Հոգւոյն սրբոյ 'ի Հօրէ,
սփռեաց 'ի վերայ մեր: Սա յոր-
ժամ համբառնայր յերկինս փա-
ռօք՝ մեզ ուխտեաց. և մնեալ յեր-
կինս, Հօր և Հոգւոյն հաւասար
նստեալ՝ զայս ասաց. Ես զգործն
զոր ինձ հաւատացեք՝ կատարեցի
յերկրի. զանուն Հօր իմոյ փառա-
ւորեցի առ մարդիկ. զեղծեալն 'ի
մախանաց չարին զպատկերակից
մեր՝ ընդ բնութիւն աստուածու-
թեանս մեր խառնեալ՝ սրբեցի
զքանչելապէս: Զմահ իմ փոխա-
նակ ողորմելի և տառապեալ ազգի
մարդկան տուեալ՝ զերծուցի զնո-
սա յանիծիցն. և այժմ նովին
մարմնով եկեալ՝ առնում զերկրր-
պագութիւն յերկնաւորացս: Այ-
սուհետև քեզ եկեալ եհաս ժա-
մանակ գործոյ, ով փառակից իմ
Հոգի. պարտիս և զքոյդ մարդա-
սիրութիւն ցուցանել 'ի յերկրի.
այսուհետև քեզ ապաստան առ-
նեմ զանուն աստուածութեանս
մեր յարգել առ մարդիկ: Հայր

նոցա խոստացեալ վերին բարեացն խորհել։ Ոչ են ծանօթ երկնաւոր փառաւորութեանն, այլ միշտ ընդ երկիր յածին. կարծեօք ունին զայս ճշմարտութիւն, և այն է համարեալ առ նոսա կեանք վայելուչ։ Վասն որոյ գու զազրայութիւն մտաց նոցա նախ նշանօք և սքանչելեօք զարմացո, և զկարծիս նոցա 'ի հաւատս հաւանութեան՝ բժշկութեան շնորհիւն ուղղեա։ Մի արգելցես զառատութեան քո շնորհս, 'ի փառս և 'ի գովեստ աստուածութենս մեր բաշխել։ Մեծ է, զի որպէս երկինս, նոյնպէս և երկիր լցցի փառօք աստուածութեանս մեր. և որպէս զհրեշտակս՝ սոյնպէս զմարդիկ ստասցուք անուանս մեր օրհնաբանիչս։ Ոչ է զարմանք եթէ զմեր արարածն մոլորեալ՝ մերով բազմապատիկ զօրութեամբ առ մեզ նուաճեսցուք։ Արդ էջ աղաչեմ, էջ, զի պաշտարեալ է տարակոյսն զնոսա։ Փոքր ինչ 'ի անօրէնութեան մահուն մեկնեցայ, և երկուանք որպէս

զծննդականի պաշարեաց զիմ աշակերտս, մինչ երագեալ զկարութիւնն՝ մխիթարեցի զնոսա։ Մինն 'ի մետասանիցն ոչ էր անդ, և տասանցն վկայելոյ ոչ հաւատայր վասն յարութեանն. մինչև դարձեալ յայտնեցայ նոցա, և զխոցուած կողիցս՝ հաւատ նմին մըտացն ետու շօշափել։ Եւ այժմ իմ ճանապարհ արարեալ ընդ երկինս, մի՛ կարծմտութիւն նոցա զայթագղեսցի 'ի մխիթարութենէ քո յուսոյդ։ Վասն որոյ երագեալ մխիթարեա զորդեակն իմ և զաշակերտսն։ Գնա հանգիր 'ի նոսա, որպէս խոստացայ նոցա, և վարդապետեալ յիշեցո նոցա զամենայն առ յինէն ասացեալսն։

Յայնժամ սլացեալ ամենակարն զօրութիւն, փրկականն առատութի, հեզութեան աղբիւրն, մարդասէր շնորհն, բարութեան Հոգին, հեղումն առատութեանն Աստուծոյ, անցանէր ահեղ որոտմամբ ընդ դասակարգութիւնս անմարմնականացն պարուց. և պքան-

չարչարել պատկերան հրաշամանք նա-
հատակութիւնք երկնաւոր զօ-
րացն: Աստ զի զոր ցանկային ընդ-
աղօտ տեսանել, նայեցան իսկա-
կան էութեամբն դիմեալ, 'ի մե-
րայ երկրածին ազգի մարդկան
ստանալ: Քանզի էջ բոլորովին
անձնաւորութիւն Հոգւոյն սրբոյ
այսօր 'ի գաւառ առաքելոցն գնդի,
որպէս միածինն 'ի յարգանդ կու-
սին: Եւ որ եկն, այլ ոչ մեկնե-
ցաւ. այլ մնաց յեկեղեցի Քրիս-
տոսի ըստ անսուտ խոստման իւրն
փրկչին, որ ասաց. Ընդ ձեզ բնա-
կեսցէ, և ընդ ձեզ եղիցի յաւի-
տեան: Որ և զօրացոյց այսօր զա-
ռաքեալսն, և նոցա մատակարա-
րութեամբն՝ զընդհանուր տիե-
զերս: Զի և սմա առաւել քաղց-
րացաւ ճաշակ մարդկան փրկու-
թեան, ընդ որս եկաց և բնակե-
ցաւ: Ուստի և Պետրոս կերեալ
յինքեան զՀոգին, զատելն Անա-
նիային ոչ մարդկան ստայր, այլ Աս-
տուծոյ. Ընդէ՞ր, ասէ, եդիք 'ի մտի
ստել Աստուծոյ. և փորձել զՀո-

զիմն Աստուծոյ, զիս կամելով պատ-
րել. ոչ մարդկան ստեցիք, այլ
Աստուծոյ: Սորա շնորհն՝ 'ի գնեմն
ղձեալ առաքելոցն՝ հանդերձ 'ի
վերայ Ստեփանոսի, որ և անդէն
զօրացաւ տանել նշանս և ա-
րուեստս մեծամեծս: Սա արգա-
րեալ որպէս Թագաւոր եկեղեցւոյ՝
սրոշէր զՊաւղոս և զԲառնաբաս
'ի գործ բանին իւրոյ սպասաւո-
րութեանն: Սա զոմանս ընտրեաց
յառաքելութիւն, զոմանս 'ի մար-
գարէութիւն, զայլս 'ի հովուու-
թիւն և 'ի վարդապետութիւն.
որպէս Մատաթեայ զառաքելու-
թիւնն վիճակեաց, և Ագաբեայ և
Տիմոթեայ՝ զմարգարէութիւնն, և
երիցանցն Եփեսոսի եկեղեցւոյն՝
զհովուութիւն և զվարդապետու-
թիւն. Զայս լուր, տես, հո-
գիդ՝ որում եդ զձեզ Հոգին սուրբ
տեսուչս և վարդապետս: Սա ար-
ձակեալ համարձակեցոյց զերկուս
նիւթեղէնս կոչել հայր զԱս-
տուած, որ նստի 'ի կառս հրե-
ղէնս, և Թեւաքողեալ պաշտի 'ի

հրեղէն յանմարմնականացն. Զի տայք զհոգին որդեգրութեան, որով աղաղակեմք աբբայ հայր. Նոյն ինքն հոգին վկայէ հոգւոյս մերոյ եթէ եմք որդիք Աստուծոյ: Սա ուսմամբ տայ բան իմաստութեան, այլում բան գիտութեան, միւսումն հաւատք զերկինս փոփոխելոյ, և այլում զօրութիւն աքանչելի գործս կատարելոյ: Սա օծանէ զմիտս մեր՝ ըստ Յովհաննու, և ուսանէ քրիստոսընկալս. և յայսմ օծութենէ զօրանամք գիտել զամենայն: Սա լուսաւոր առնէ զաչս սրտից մերոց գիտել զյոյս կոչման մերոյ, և զմեծութիւն փառաց ժառանգութեան, և զլայնութիւն և զերկայնութիւն սիրոյն Քրիստոսի: Վասն որոյ արհամարհեցաք զերևելիս, և փափաքեմք աներևութեց: Եւ հոգւովս՝ Քրիստոս 'ի մեզ բնակեալ, մեռոյց զզգայարանս մարմնոյ՝ հեշտութեան մեղաց, և կենդանացոյց զբանական հոգիս՝ արդարութեան խորհրդոցն յուսով: Որով զօրա-

ցեալ կոխեցին մարդիկ զնեղութիւն և զանձկութիւն, զհալածանս, զսով և զմերկութիւն, ըզսուր, զոր կանս և զհանդերձեալսն, պայծառացեալ հոգւոմն 'ի գիտութիւն սիրոյն Քրիստոսի: Սա որ քննէ զխորս Աստուծոյ՝ քննէ և զսիրտս մարդկան. և տեսեալ զտկարութիւն բնութեանս՝ 'ի թիկունս հասանէ տկարութեան մերում, և բարեխօս լինի 'ի հեծութիւնս անմռունչս վասն եկեղեցւոյ առ Աստուած: Եւ ինքն սիրողացն զԱստուած յամենայն գործս բարիս գործակից լինի հանապազ: Ամենեցուն կամի զփրկութիւն, ամենեցուն սպասէ հաւատոց, որպէս զի 'ի Նուիրելն՝ զհաւատոյ սերմանեսցէ 'ի նոսա շնորհս և զօրութիւնս հոգևորս:

Կամիս գիտել զչափ սիրոյ սորա առ մարդիկ. յարեաց 'ի կառս ներքինւոյն, որպէս երբեմն Փիլիպպոս. տես թէ որպէս միով հաւատով հարցմանն տուաւ հոգին փոխանակ. Տէր, ասէ, աղա-

է յորդառատ առողջանոց մնայ
մարդկան, որ արբուցանէ զակօսս
իմաստից մտաց, և զուարթացու-
ցանէ ցօղովն իւրով զզանազան
բոյսս առաքինութեան ծաղկանց,
որպէս ասաց Քրիստոս, գետք յո-
րովայնէ հաւատացելոց իւրոց բղ-
խել 'ի Հոգւոյն, ըստ որում նա-
խանձաւորաց մարգարէն։ Վերա-
կացու է արթուն, հրահանգիչ
կարգաց եկեղեցւոյ, և որոշող իւ-
րաքանչիւր աստիճանաց և պաշ-
տօնոյ, որ եդ նախ զառաքեալս,
երկրորդ զմարգարէս, երրորդ ըզ-
վարդապետս, ընդ որս զզօրու-
թիւնս և զշնորհս բժշկութեան,
ազգս լեզուաց և թարգմանու-
թիւնս լեզուաց։

Հոգիս ներգործութեան՝ յօրի-
նէ զպատուակարգութիւն աստիճա-
նաց տաճարին 'ի համանմանու-
թիւն երկնաւորացն պարուց, հա-
գեար երգով միշտ Աստուածոյ խօ-
սակցելով ցնծութեամբ։ Հոգիս
այս ծննանի զմանկունս եկեղեցւոյն
Քրիստոսի՝ յորդեգրութիւն Հօրն

նորոգող ամենայնի, սուրբ Հոգի.
'ի քո խնամս պահպանութեան՝
համբուն քաջ դհօսս իւր արար ա-
պաստան, և ախնեաց զձառա-
ղայթ քո յեկեղեցի իւր մինչև յա-
ւիտեան: Ի քեն շարժին լեզուք
մեր 'ի պատարագս օրհնութեան,
և անձինք մեր կարգեցան 'ի սպաս
զանազան ընորհաց քոց պաշտա-
մանց: Զքեզ աղաչեմք ամենեքին
միաբան, և խօսիմք ընդ քեզ հա-
մարձակ՝ որդիք երկանց արգանդի
քո ծննդեան: Մի զարշիր 'ի հօտէ
քումմէ վասն հոտոյ մեղաց պաղ-
րութեան, և մի տրտմիր վասն ան-
պարկեշտ բանի բարբառման. այլ
ձնամ ընդ մեզ հաշտութեամբ մին-
չև 'ի կէտն աւարտման, և լեր ու-
ղեկից յերկնային քո խորանսդ:
Ո'վ Տէր, և զարտաքսեալքս 'ի
վայրս նժդեհութեան՝ պարսպեալ
պահեա 'ի թշնամեաց նետից խո-
ցտման: Զունիմք զօրութն հան-
դիմանալ 'ի մարտ ճգնութեան,
խնդրեմք հառաչմամբ՝ մի տար
զմեզ 'ի փորձանս զարանակալին

չարութեան։ Յուր ծարաւեայս ըղձալի սրտիս քո արբեցութեան, զմատառուակեալն այսօր 'ի սուրբ վերնատան։ Զի մխիթարեսցուք 'ի խշտիս մերոյ տրտմութեան, և 'ի հանդերձեալ կենացն յոյս կալցուք ապաստան։ Ո՛վ բարերար սուրբ Հոգի, և յայս նուէրս` որ 'ի քոյոցս քեզ բուրումն օրհնութեան, հատուցեալ քաղցրութեանս, Աստուած իմ Հոգի հեզութեան։ Եւ քեզ օրհնութիւն 'ի մէջ մի բերան, ընդ Հօր և Որդւոյ 'ի մշտնջենաւոր կեանս և անվախճան. Ամէն։

